# Ռ Ա Զ Լ Ի Վ

ԱՐՏԱՎԱԶԴ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ

Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ

— Տե՛ս, Կոնդրա՛տի,— երբ մոտեցան լճին, ևս մի անգամ զգուշացրեց Նադեժդա Կոնդրատևնան,— կապոցը որևէ մեկի ձեռք չգցես, հա՞...— և խիստ նայեց քնատությունից ճմլկոտվող որդուն.— Հակառակ դեպքում սուզիր ջուրը:

Այգը ծեգում էր, և դեռ Սեստրորեցկ ավանը չէր մարել լույսերը: Տղան մոտ քաշեց մակույկը, կապոցը խցկեց նստարանի տակ, ծածկեց պարանի կծիկով: Դա ընդհատակյա փոստն էր, որ ըստացվել էր գիշերը. հիմա տղան կշտամբանքով խեթեց մորը:

— Անհոգ եղիր, մա՛մ...— ու հառաչեց.— Մի՞թե կարելի է այդքան ասել:

Սեստրորեցկի զինագործարանի-հնագույն բանվոր Նիկոլայ Եմելյանովի տղան իսկական հոր կտորն էր. և՛ հառաչելու ձևը, և՛ բիթ ու մռութը:

— Ուզում եմ հասկանաս, Կոնդրատի,— Նադեժդա Կոնդրատևնան համառեց,— որ եթե մի բան պատահի, վատ կլինի թե՛ նրա՝ Կոնստանտինի Պետրովիչի, թե՛ մեզ համար: Պետք է շատ զգույշ լինել:

Տղան թիակները պարզեց ջրերին: Արդեն ուշանում էր: Սեստրա և Չեռնայա գետերի կողմից բարձրանում էր լուսաբացի արևը:

— Կոնդրա՛տի...— դարբասն աղմուկով բացվեց և ցանկապատի տակով վազեց մեկը,— ինձ էլ տար, հա՞, ես ուզում եմ ձուկ բռնել:

Ահա և փորձանքը: Դա Կոշն էր՝ կրտսեր եղբայրը՝ փորը բաց, շալվարի կոճակները չկոճկած, բայց աչքերը՝ կայտառ: Գիշերն էլ ուշ էր քնել: Նադեժդա Կոնդրատևնան մտածեց.

— Գուցե թե վերցնես, հը՞: Դա մի կողմից և լավ է. այն տպավորությունը կստացվի, թե, իսկապես, ձուկ բռնելու ես դուրս եկել: Ո՞ւր են կարթերը:

Տղան ցույց տվեց երկար կարթաձողը և փաթաթած կարթաթելերը, ապա հրամայեց.

— Նե՛, ցատկի՛ր, շու՛տ, բլոճ: Շալվարդ էլ կարգին չես հագել:

Մայրը կարգի բերեց շորերը, օգնեց, որ նստի մակույկի մեջ: Ետ կանգնեց: Ջուրը թեթևակի ճողփաց:

Կանաչ եղեգնաթփերի պուրակով բարձր ցանկապատված տնակը ետ մնաց: Իսկ շուտով ծածկեց մեգը: Մակույկը դանդաղորեն սահում էր առափնյա խութերին մոտիկ, զգուշավոր: Այնպես որ, երբ ծանծաղուտն անցան, շրջապատում արդեն հնարավոր չէր ջոկել որևէ բան: Գորշ մշուշ էր պատել և՛ հսկայական տարածված ճահճուտը, և՛ ամբողջ Ռազլիվ լճակը:

— Հա՛ տե՞ս, Կոնդրա՛տի,— տղան կարթերը նետել էր ջուրը,— պելկեմները հենց մի գլուխ մտնում են եղեգնելի մեջ:

Իսկապես, լճակում ամեն ինչ դարձել էր բաց կապույտ, և դժվար էր հավատալ, որ դրանք լուսատողե աչքերով պերկեսներ են:

— Իսկ դու՛, Կո՛շ,— տղան խրատեց,— ավելի լավ է՝ լռես: — Հիմա էլ մակույկը տարավ ջրերից ելած եղեգնախոտերի միջով:— Որովհետև, երբ խոսում ես,— բացատրեց,— ձկները փախչում են:

Դա բոլորովին էլ հնարավոր չէր, բայց և այնպես՝ Կոշը կպավ մակույկի ցռուկին, լռեց:

— Է՜յ, ո՞վ կա այդտեղ,— հանկարծ ինչ-որ մեկը բղավեց: Կոնդրատին արագ շուռ եկավ: Իհարկե՝ կեղտոտ շինել և կադետական մուշթ: Տեսել էր: — Եկ այստե՛ղ:

— Ինչու՞ որ...— տղան հակառակեց:

— Որ ասում եմ...— ու հեռու՝ լճակի մերձ եզրագծին, ոտքերը համարյա ալեբախության ջրերի մեջ, վճռական կանգնել էր.— ուրեմն, ե՛կ:

Տղան հավաքեց կարթաթելերը, մտածեց, եթե ետ դառնա, կադետը կարող է կրակել, հետո չես կարող ասել, թե դրանից ինչ դուրս կգա: Մակույկը նրա կողմը դարձրեց:



—Այդ ի՞նչ է,— հիմա կարելի էր տեսնել նրա տափակ քիթը, երկար, կախ ընկած ծնոտը,— պերկեսմե՞ն ես բռնում:

Տղան ճիշտ էր վարվել՝ նախքան հոլիկ ուղևորվելը պետք էր նշանի համար գոնե երկու ձուկ բռնել: Հիմա դրանք ընկած էին մակույկի հատակին:

— Ձեր թույլտվությամբ...— հեգնեց Կոնդրատին և արհամարհական դիտեց ոտից-գլուխ. «Ի՞նչն է սրան այս կողմերը բերել. երեք օր պտտվում է շրջապատում»:

— Զգուշացի՛ր, տղա՛,— բարկացավ կաղետը.— հանկարծ լեզուդ քոքից չհանեմ...

Գոշը վախեցած՝ եղբոր ոտքերին կպավ: Կոնդրատին հասկացավ, որ այսպես՝ անխոհեմ կլինի, պետք է պոկվելու այլ ձև մտածել: Կաղետը, նույնպես, մտածեց. «Գավառացի լակոտների հետ չպետք է վիճել՝ մեկին տասը կպատասխանեն, և բոլորն էլ սրամիտ ու շփոթեցնող: Գուցե թե հաշտ խոսել...»

— Դե լա՛վ, տղա՛,— նա չցանկացավ էլ անունը հարցնել,— ինձ հարկավոր է մյուս ափը հասնել,— վերից վար դիտեց,— և բացի այդ՝ ուզում եմ մի երկու հարց տալ...

Ու չսպասեց էլ հրավերի. լոդից մակույկը և տեղավորվեց դեմ-դիմաց:

«Ասում ես՝ լա՛վ, ուրեմն, լավ, կեղտոտ կադետ,— որոշեց տղան,— երևի շրջակայքին լիովին անտեղյակ ես: Ես հենց հիմա այնպիսի ճահճի մեջ իջեցնեմ, որ հուր-հավիտյան Սեստրորեցկի բոլոր պստիկ տղաներին հիշես»: Ու թիակներն ուրախ զարկեց ջրերին:

— Իսկ այդ ի՞նչ է... և, սակայն, կաղետը չհանգստացավ, շարունակեց զննել:— Նստարանի տակ որևէ բան չե՞ս թաքցրել:

Կոնդրատի բերանում թուքը լիովին ցամաքեց, շփոթվեց. «Իսկ եթե պնդի՝ ստուգե՞լ:— Արագ վճիռ կայացրեց.— Մակույկը շուռ կտամ,— և հուսադրեց.— գուցե այդ թվա պատահաբար»: Այս մտքից ոգևորվեց:

— Շա՜տ դյուրին կլիներ, եթե լիներ մեկական հատ սելյոդկա,— մեծավարի խոսեց,— և... ու՜ֆ,— մատով թխթխկացրեց պարանոցին,— գոնե կես շիշ տնական...— ու հիասթափված ավելացրեց.— Կարծում եմ՝ պարանը կրծելու հարկ չի լինի:

Կաղետը հուսախաբ թաց ծնկներին նայեց՝ այո, քաղցած էր, թաքցնել չէր լինի. գոնե դրանք տապակած լինեին: Եվ, այնուամենայնիվ, որոշեց չվիճել: Շարունակեց.

— Դու հոլիկ չես՝ այդ երևում է, ինչի՞ց, բայց երևում է. և, անշուշտ, այս կողմերին հրաշալի տեղյակ ես:



—Ես հենց այստեղ էլ ծնվել եմ՝ Սեստրորեցկում,— չթաքցրեց տղան:

— Ապրե՜ս,— գոհացավ կաղետը,— հիմա դու ինձ սկսել ես դուր գալ: Բարեհամբույր դիտեց.— Եվ գուցե հենց դու էլ օգնես, լավ տղա,— դեմքին կեղծ անմեղություն ընդունեց,— ինչպե՞ս գտնել եղբորս:— Բացատրեց, որ նա ֆիննի է, այս շրջանում, ինչ-որ մեկի մոտ օրավարձով խոտհարքի է լծվել:— Հավանաբար տեսած կլինես: Այսպիսի մարդ է,— ձեռքը պարզեց,— ոչ բարձրահասակ...

«Օ՜, անպատկառ կաղետ,— ամբողջ ժամանակ մտածում էր տղան,— տե՛ս, թե ինչպես է ուզում խոսք կորզել:— Մռայլվեց.— Հապա դու ի՞նչ ֆինն ես, որ զինված ես շրջում, ինչպես ամենաիսկական ավազակ», և հայացքն ընկավ շինելի տակից բացված ատրճանակին: Կաղետն անմիջապես նկատեց, շինելի փեշով ծածկեց, մի պահ լուռ մնաց: Կոնդրատին շարունակեց թիավարել: Իսկ Գոշը մերթ նայում էր կաղետին, մերթ ծնկներին ու լճին: Մի տեսակ տագնապած էր: Կաղետը որոշեց անկեղծ լինել:

— Երևում է՝ դուք շատ պորտից ընկած եք, ձեզ խաբել չի լինի: Լավ,— իբր ինչ-որ բանում համաձայնեց,— ինչ-որ պետք է, կստանաս: Քեզ էլ բաժին կլինի, գլխագինն այնքա՜ն մեծ է:— Եվ կեղծ ոգևորվեց.— Մի տե՜ս, է, միանգամից կհարստանաս: Այդքան պստիկ, բայց կլինես հարուստ մարդ:

—Ու լճի վրա երևակայական դղյակներ կառու-

ցեց, վերջապես կոնկրետացրեց, առաջ հակվեց.— Սրան լավ տես...— բռան մեջ ցույց տվեց մի խունացած նկար,— այստեղերը թրևում են ամեն տիպի հովեկներ, որոնք թե՛ սունկ են հավաքում, թե՛ կարթ նետում... Դրանց մեջ չե՞ս հանդիպել սրա պես որևէ մեկին։

Տղան երկար դիտեց։ Այդ հետաքրքրեց կադետին։ Նկարում բեղ ու մորուքով մարդ էր, իսկ ով ապրում էր լճի այն կողմ՝ հոլիկում, որին մի գիշեր հայրը տուն բերեց, բոլորովին ո՛չ բեղ ուներ, ո՛չ մորուք, բայց զարմանալիորեն նման էր։ Մի՞թե նա է։

— Իսկ ո՞վ է սա։

Կադետն առանց հապաղելու ասաց.

— Բոլշևիկների առաջնորդը՝ Վլադիմիր Իլյիչը։— Նա ենթադրում էր, որ տղան կարող է այդ անունը ինչ-որ տեղ լսած լինել։

Տղան ետ նստեց։ «Ահա թե ի՜նչ... Ուրեմն, նա ոչ թե Կոնստանտին Պետրովիչ է, այլ... Վլադիմիր Իլյիչ։ Եվ նա էլ հենց բոլշևիկների առաջնորդն է։ Իսկ ինքը ընդհատակյա փոստը տանում է բոլշևիկների առաջնորդին։— Սիրտը թունդ առավ.— Իսկ բեղ ու մորու՞քը։ Քիչ մնաց, թե ծիծաղի։— Հավանաբար սափրել է։— Բայց նա արտաքնապես մռայլվեց.— Իսկ տանն այդ մասին ոչինչ չեն խոսել»։

—Հը՞, տղա՛,— համառեց կադետը.— տեսե՞լ ես...— ուզում էր օձիքից բռնել։

Ոչ... այդ տեսակ մարդ չեմ տեսել,— բոլորովին հանդարտ ուսերը թոթվեց,— ու՜ր է, թե տեսնեի...— ծիծաղեց.— Երևի խոստացել են շատ փող, հը՞...

Կադետը հանգստացավ, նկարը ծոցը դրեց։

— Սատանա՜ն քեզ տանի, իսկ հիմա ու՞ր ես քշում։ Շո՛ւռ տուր դեպի այն կողմ։ Դե՛,— ձեռքը պարզեց։

Տղան հենց այնտեղ էլ ուզում էր տանել. այնտեղ ճահիճը կպչուն էր և դեպի հոլիկը կտրված էր ջրի նեղ շերտով։ Դժվար թե կարողանար ետ դառնալ։ Թիակի հարվածով դարձրեց մակույկը։

—Կոնդրատի...— վերջապես կադետը երբ ափ ցատկեց, թեթևացած շունչ քաշեց Դոշը,— իսկ հետո ո՞նց պիտի անենք։

Տղան մակույկը ետ դարձրեց, քաշեց եղեգնուտը, տարածվեց հատակին, առաջ հակվեց՝ ջանաց մշուշում նկատել որևէ բան։ Կադետը գնում էր անհաստատ՝ ճահճի մեջ խրվելով և մի կերպ ոտքերը դուրս քաշելով։ Իսկ քիչ անց, արդեն հնարավոր չէր լսել, թե ինչ է հայհոյում նա այնտեղ։

— Հետո՞...— տղան հիմա եղբորը դարձավ,— ինչ է՝ քեզ պիտի ամեն ինչ ասե՞մ,— և ճակատին թեթևակի կտտոց տվեց,— կմեծանաս-կիմանաս,— ու թիակներն իջեցրեց ջուրը։

Շուտով հայտնվեց հնձած խոտի երկարուկ շեղջը։ Մակույկն արագ ափ քաշվեց։ Կոնդրատին վերցրեց կապոցը, ապա նա և Դոշն անցան ցաքուցրիվ դեզերի մոտով։ Մշուշը պինդ էր նստել, և հնձած խոտը՝ նրանց ոտքերի տակ, թրջվել էր խոնավությունից։

— Ի՞նչ է...— Կոնստանտին Պետրովիչն ուրախ դիմավորեց հոլիկի առջև,— դուք արդեն այստեղ եք...— Նա կանգնել էր եղանը ձեռքին, կեպին աչքերը խրած, չափազանց լայն վերարկուով.— Ա՛յ, թե մշուշ է, հա՞...— և շեշտակի, փոքր-ինչ հումորիկ ժպիտով դիտեց Դոշին.— Դե, բարև՛, ընկե՛ր,— լայն ափը պարզեց նախ մեկ, ապա մյուս Եմելյանովին,— և, իհարկե, մրսե՞լ եք...— եղանն արագ դեզի մեջ խրեց, ուսերը ետ գցեց, վերարկուն սահեց թևերից.— Թույլ տվեք...— միանգամից գցեց Դոշի և Կոնդրատիի ուսերին, գրկած՝ խարույկի մոտ բերեց.— Ես հենց հիմա...— ու խանձողով թեժացրեց կրակը։

Իսկ հիմա Կոնդրատին և Դոշը մնացին մենակ։ Կոնստանտին Պետրովիչն անցավ թփուտների ետև, որտեղ տաղավարն էր, թաղվեց թղթերի մեջ։ Անսահման անդորր իջավ և սկսեց անհանգիստ ոգին իշխել։ Ոգին էր դա անող հեղափոխության՝ և՛ Ռազլիվում, և՛ ամբողջ Ռուսաստանում։

Բլոճ, մի՛ թնգթնգա, և դու էլ, Կոնդրատի, տեղըդ հանգիստ մնա. այնտեղ աշխատում է առաջնորդը. նա վճռում է ձեր և բոլորի բախտը...





# ՄԻ ԱՆՁՐԵՎՈՏ ՕՐ



ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Քիչ հետո կսկսվեն թեք շրջադարձերը, այնուհետև ճանապարհը կանցնի անտառապատ ձորով, այնուհետև հորդացած գետի վրայի կամուրջն է, խաչմերուկը: Այստեղ հայրը ավտոմեքենայից կիջեցնի տղային: Արահետով Սեթը կբարձրանա, կանցնի անտառով, կհասնի Մարավան և տասնյոթն անց հինգ րոպեի երթուղում կհասնի իրենց գյուղը՝ Վարդե: Հետևյալ ավտոբուսը վերջինն էր և Մարավանից դուրս էր գալիս արդեն քսանմեկին տասնհինգ պակաս: Աշնանային օրը մթնում էր արագ, երկինքը ծածկված էր գորշ թուխպերով, անտառի գույները մթին էին: Ասֆալտապատ ճանապարհը մի տեսակ մերվել էր շրջապատի գորշությանը: Հայրը վառեց լույսերը: Նա երկաթբետոնե սալեր էր տեղափոխում բանավան և ամեն օր վերջին երթերից մեկի ժամանակ դպրոցից վերցնում էր տղային:

Հայրը դանդաղեցրեց ընթացքը, սկսվում էին շրջադարձերը:

— Տե՛ս, ավտոբուսից չուշանաս,— ասաց նա տղային:— Եթե իմացա մայրդ քեզ սպասել է՝ շան նման կթակեմ:

— Իսկ շանը ինչպե՞ս են թակում,— հարցրեց Սեթը:

— Դու չե՞ս տեսել, թե ինչպես են թակում շանը:

— Ոչ:

— Ասենք՝ ճիշտ է, հիմա շներին չեն թակում, մարդիկ ավելի խղճով են դարձել: Մեր ժամանակ թակում էին: Այնպես որ, դա այնքան էլ հաճելի բան չէ և խորհուրդ՝ չեմ տա ուշանալ:

Մարավանում Սեթը երբեմն թափառում էր խանութներում, կինո էր նայում, նա Մարավանում նույնիսկ ծանոթ տղաներ ուներ, և ուշանում էր ավտոբուսից: Հարկ էր լինում սպասել վերջին ավտոբուսի երթին: Անձրև սկսվեց: Հայրը միացրեց ապակեմաքրիչը:

— Ինչպե՞ս ես սովորում,— հարցրեց հայրը:

— Սովորում եմ,— ասաց Սեթը:

— «Երկուսներ» չունե՞ս:

— Չունեմ:

— «Հինգե՞ր» էլ չունես:

«Ժամանակ չի լինում նրանով կարգին զբաղվելու»,— մտածում էր հայրը:

— Քեզ ձեռքից լրիվ թողել եմ,— ասաց նա, խիստ հայացքով նայելով տղային:— Ի՞նչ պիտի դուրս գա քեզանից՝ չգիտեմ:



Այնուհետև ճանապարհը ձգված էր անտառապատ հովտի երկայնքով, և հայրը ավտոմեքենան լրիվ արագությամբ վարեց:

— Ես ավտովարորդ կդառնամ,— ասաց Սեթը:

— Չէի ցանկանա,— ասաց հայրը:— Ասենք դա կարևոր չէ, ինչ ուզում ես դարձիր, միայն թե լավ մարդ եղիր: Հիմա բոլորն էլ ապրում են:

Անցան կամուրջը: Անձրևը չէր դադարում, մաղում էր բարակ, անվրդով:

— Թրջվելու ես,— ասաց հայրը:

Ասֆալտի ճանապարհի նեղ շերտը և ճանապարհի աջ կողմում սպիտակ ներկված եզրաքարերը նշմարվում էին տարտամ: Խաչմերուկում հայրը իջեցրեց տղային:

— Տե՛ս, կրկնում եմ, ուշացար՝ քոթակ ես ուտելու:

Սեթը գլխին քաշեց անձրևանոցի վեղարը, պայուսակը թևատակին, մտավ անտառը: Անձրևը շարունակում էր մաղել, անտառում մթնում էր, արահետը վերածվել էր ցեխի բարակ շերտի և քայլելը դժվար էր: Մինչև Մարավան նա ամեն օր այդպես չորս ու կես կիլոմետր քայլում էր: Սկսվեց վերելքը: Սեթը պայուսակը ուսափոկերով հագավ մեջքին, վեղարի նեղ արանքից նա տեսնում էր միայն առջևը. այնտեղ, նրանից մի քանի մետրի վրա, սայթաքելով, ըստ երևույթին հոգնած, քայլում էր մի տղա: Սեթը հասավ նրան և բավական ճանապարհ նրանք քայլում էին կողք-կողքի: Տղան բարձրահասակ էր, նիհար, նեղ ուսերով, և ուսապարկի ծանրության տակ քայլում էր կքված:

— Հեռո՞ւ ես գնում,— հարցրեց Սեթը:

— Ես ետ եմ ընկել մեր խմբից,—ասաց տղան,— Կոշում նրանք ինձ կորցրին. հիմա ես գնում եմ Արտեն, այնտեղ մենք պիտի իջևանեինք:

— Բայց դու գնում ես Վարդե:

— Ինչպե՞ս թե Վարդե:

— Ես ամեն օր այս ճանապարհով գնում եմ Վարդե,— ասաց Սեթը:

Նրանք կանգ առան: Այդ տղան բարձրահասակ էր, նիհար, թվում էր, թե նա այնքան հոգնած էր, որ կարող էր միայն այդպես կանգնած մնալ անձրևի տակ, հազիվ միայն տանելով բավական մեծ ուսապարկի ծանրությունը:

— Հիմա ես ի՞նչ պիտի անեմ,—ասաց նա:

— Գնանք,— ասաց Սեթը,— կգիշերես մեզ մոտ, իսկ առավոտյան հայրս քեզ կտանի Արտեն:

— Չի լինի, նրանք առավոտ վաղ կմեկնեն Երևան, և պատկերացրու, թե մեր տանը ինչ կլինի. նրանք ինձ կորցրել են:

Նրանք ետ դարձան և բավական երկար քայլեցին, մինչև հասան Արտեն տանող ճանապարհին: Բարձրահասակը գնում էր առջևից, խոսում էր բարձր, մեծահասակի խռպոտ ձայնով.

— Գոնե այս անձրևը դադարեր: Անհարկու վայրեր են, ինչպե՞ս եք դուք այստեղ ապրում, չգիտեմ: Քաղաքում լավ է: Ես մոտորոլեր ունեմ, հայրս է գնել:

— Իսկ դու դրոշմանիշեր հավաքո՞ւմ ես,— ասաց Սեթը:

— Օ՜, դրանցից ես շատ ունեմ, ա՛յ, հասնենք կայարան, ես քեզ հազվագյուտ օրինակներ ցույց կտամ:

— Մինչև Արտեն դեռ մեկուկես կիլոմետր կա:

Բարձրահասակը կանգ առավ, ուսապարկը վար բերեց:

— Ա՛յ, եթե սա չլիներ, դժվար չէր լինի գնալը: Թողնեմ այստե՞ղ, ինչ է: Բայց ափսոսում եմ. դրոշմանիշերի ալբոմն էլ հենց սրա մեջ է:

— Տուր ինձ, ես կտանեմ,—ասաց Սեթը:

— Վերցրո՛ւ, եթե քեզ դժվար չէ,— ասաց բարձրահասակը,— որքան կարող ես տար, հետո էլի ես կտանեմ:

Սեթը պայուսակի վրայից շալակը գցեց ուսապարկը, և նրանք շարունակեցին քայլել: Մթնում, անձրևի մեջ, երբ այդ տղան դառնում էր, Սեթը տեսնում էր նրա կանոնավոր դիմագծերով դեմքը. այդպիսիների հետ ընկերություն անելը հաճելի է, այդպիսիները հեշտությամբ են ընկերներ ճարում, այդպիսի բարձրահասակ, դուրեկան դեմքով տղաները և շատ ընկերներ են ունենում: Մի փոքրիկ վայրէջքից հետո սկսվեց նոր վերելք, և նրանք գնում էին արդեն բոլորովին մութ ու թաց անտառով: Հանկարծ այդ տղան կանգ առավ.

— Իսկ մենք սխալ ճանապարհով չե՞նք գնում,— հարցրեց նա:

— Ո՛չ,— ասաց Սեթը:

— Դու համոզվա՞ծ ես:

— Ես շատ անգամ եմ գիշերով գնացել Արտեն:

— Նայի՛ր,— ասաց բարձրահասակը,— սխալվեցիր՝ ինձնից լավ բան մի՛ սպասիր:

Նրանք շարունակեցին քայլել: Վերջապես ճյուղերի արանքից նրանք տեսան Արտենի լույսերը: Չքնաշխարհիկների կայանը տեղավորված էր գյուղի եզրին: Կայանից ցած, քարափների ներքևում հոսում էր մի պարզ գետակ և ցերեկները այստեղից դիմացի սարալանջերի անտառը երևում էր սքանչելի գեղեցիկ: Նրանք մտան լավ լուսավորված մի սենյակ: Լուսամուտի գոգին դրված տրանզիստորը հնչեցնում էր ինչ-որ հանդարտ եղանակ. մի քանիսը ոտքերը մահճակալների գլուխներին պարզած հանգստանում էին, մի քանիսը ծխում էին, մի երկուսը զբաղված էին շախմատով, ինչ-որ մեկը փոք-

# Ա Մ Ռ Ա Ն Գ Ի Շ Ե Ր

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՋՅԱՆ*

Սփսփում է իմ ուղին
Վարսերով շաղոտ,
Սեր փիսիկն է կտուրին
Քնել պապի մոտ:
Լուսնի ցոլքը փիսիկին
Օրոր է ասում:
Կաթկթում են ծառերից
Տանձերը հասուն:

Հորանջում են հանդ ու լեռ,
Խորունկ գիշերով,
Լուռ սահում է մի ստվեր
Ջրի փեշերով:
Պարզ երկինքն է լույս տալիս՝
Աստղերը ափում,
Եվ գիշերվա մեղմությամբ
Ծղրիդն է երգում:

րիկ բաժակով ըմպում էր տաք սուրճ: Պատին գամերից կախկրտված և ուղղակի մահճակալների մոտ ընկած էին նրանց ծանր ուսապարկերը:

— Օ՜, Արմենը ժամանեց...— ասաց նրանցից մեկը:

Մյուսների համար, թվաց, թե դրանում որևէ կարևոր բան չկար, նրանք նույնիսկ գլուխները չդարձրին:

— Կիմ,— ասաց մահճակալի վրա պառկած տղաներից մեկը,—բաց արա ուսապարկս և ինձ տուր թերմոսը: Տե՛ս, սիգարեթներիցս չթողնես. ինքս կըտամ քեզ:

— Ա՛յ անձրև՜...— ձեռքերը ծոծրակին դրած և ճմզկտվելով ասաց նրանցից մեկը, պատուհանի առջև կանգնած,— բոլորովին խոսելու տրամադրություն չկա:



Նրանք համարյա բոլորն էլ բարձրահասակ էին, նիհարավուն, ինչ-որ տափակ, միայն նրանցից մեկը, որին մահճակալի վրա պառկած տղան խնդրում էր տալ թերմոսը, կարճահասակ էր, գիրուկ, կարմրաթուշ:

— Ներս եք գալիս ու դուռը կարգին չեք ծածկում,— հանկարծ բղավեց մահճակալի վրա պառկած մի տղա, նրանցից երևի ամենաբարձրահասակը և շատ լուրջ դեմքով:

Սեթը ամուր սեղմեց դուռը:

— Արմե՛ն,— ասաց շախմատ խաղացողներից մեկը,— արի՛ հիացիր, թե Կարենին ի՜նչ օրն եմ գցել: Դու խղճով տղա ես, գուցե դու համոզես, որ ես խղճամ նրան:

— Ի՛նչ ես կանգնել,— ասաց Արմենը Սեթին,— ուսապարկը գցիր այստե՛ղ, մահճակալի մոտ:

Նա հանեց թաց ավիտրը, նստեց մահճակալին և սկսեց քանդել ծանր ոտնամանների կապերը:

— Կի՛մ, ինձ տաք սուրճով կհյուրասիրե՞ս,— ասաց նա:

Նա հանեց ոտնամանները, գցեց մահճակալի տակ և ոտքերը պարզելով թիկնեց բարձին: Կիմը փոքրիկ բաժակով սուրճ մատուցեց նրան. նա խըմում էր աչքերը խփած ևապա, աչքերը բանալով, զննում էր Սեթին:

— Արմե՛ն,— ասաց մահճակալին մեկնված ամենաբարձրահասակ տղան,— իսկ դրան որտեղի՞ց ես ճարել:

— Նրան ես ճանապարհին հանդիպեցի. նա վարդեցի է,— ասաց Արմենը,— այդպես չէ՞, լսիր, դու կարծեմ ասացիր վարդեցի ես:

— Վարդեցի եմ,—ասաց Սեթը:—Դու ինձ խոստացար դրոշմանիշեր ցույց տալ:

— Դրոշմանիշե՞ր,— ասաց Արմենը:— Դրանք այստեղ չեն, քաղաքում են վաճառվում: Տիգրա՛ն,— ձայն տվեց նա մի քանի մահճակալից այն կողմ նստած մի տղայի,— Տիգրա՛ն, սրան հարկավոր է դրոշմանիշեր ցույց տալ, քեզ մոտ չկա՞ն, դու, կարծեմ, դրանով զբաղվում ես:

— Նա կոլեկցիոնե՞ր է,— հարցրեց ինչ-որ մեկը:

— Չգիտեմ,— ասաց Արմենը:

Պատուհանի մոտ կանգնած տղան նորից ճմըլկըտեց մարմինը:

— Ցուրտ է,— ասաց նա,— մարդ նույնիսկ խոսել չի ուզում:

— Ես գնում եմ,— ասաց Սեթը:

— Այո՛, գնա՛,— ասաց Արմենը:

Սեթը դուրս եկավ պատշգամբ. օդը անձրևոտ էր, խոնավ ու սառը: Խոնավ պատշգամբում նա կանգնեց մի քիչ և մտածելով, որ միևնույն է, սպասելը զուր է, անձրևը չի դադարի, իջավ աստիճաններով: Անտառի միջով, անձրևի տակ, մթնում, նա դեռ ամբողջ հինգ ու կես կիլոմետր ճանապարհ պիտի անցներ: Մարավան հասավ ժամի արդեն քանմեկին մոտ: Ավտոբուսի կայանի մոտ, ամայի հրապարակում, ասֆալտի վրա գոյացած լճակների մեջ մանր մաղում էր անձրևը, կայանի ծածկի տակ ճամպրուկների մոտ կանգնած սպասում էին մի քանի ուղևոր. նրանք բոլորն էլ վերադառնում էին, և Սեթը զգաց, որ արդեն ցրտում է: Ձեռքերը գրպանները խրած՝ նա քաշվեց սպասարանի մի անկյունը և սկսեց սպասել ժամը քսանմեկին տասնհինգ պակաս Վարդե մեկնող ավտոբուսին:

Անձրևը շարունակում էր մաղել:

# ԻՄ ԸՆԿԵՐ ՄԻՍԱԿՆ ՈՒ ԻՐ ՈՐԴԻՆ

ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

Հինգ տարի առաջ ինձ գյուղից հանկարծ այցի եկավ մանկության ընկեր Շատիկենց Միսակը:

Տասնհինգ թվականի մեծ գաղթից հետո իրար չէինք տեսել: Հիսո՞ւն տարի: Չնայած՝ իրարով հեռվից-հեռու շարունակ հետաքրքրվել էինք: Եվ ահա հիսուն տարի հետո ես վերջապես տեսնում եմ Միսակին իմ տանը: Ծերացել էր, փոխվել: Բայց ես իսկույն ճանաչեցի նրա ճակատի պայտաձև սպին, որ առաջացել էր մանուկ հասակում նետած իմ քարից:

Ուրախությանս չափ չկար:

Կինս իսկույն սեղան բաց արեց և ես բարձրացրի կոնյակի ըմպանակը.

— Կենա՛ցդ, Միսա՛կ: Հիշո՞ւմ ես:

— Բա չե՞մ հիշում,— ծիծաղեց Միսակը՝ բաց անելով խոշոր, առողջ ատամները:

— Հիշո՞ւմ ես, որ կոխ էինք բռնում գեղամիջում և դու ինձ միշտ գետնով էիր տալիս:

— Էդ ի՞նչ հիշելու բան է,— ամաչեց ու կարծես արդարանալու համար կնոջս նայեց Միսակը:

— Սա մեր թաղի ամենաուժեղ տղան էր,— պատմեցի ես կնոջս:— Ինձանից մի տարով փոքր էր, բայց կոխի մեջ միշտ հաղթում էր ինձ: Մենք իրար ամեն օր ծեծում էինք ու սիրում: Դե, պատմի՛ր, Միսա՛կ: Ո՞նց են գործերդ: Գիտեմ, որ դու Մասրուտում անվանի բրիգադավար ես: Գիտեմ, որ լավ երեխաներ ունես, լավ կին: Մի օր Մասրուտ պիտի գամ, տեսնեմ ընտանիքդ:

— Աչքիս վրա:

— Ո՞վ է կինդ, մեր երկրի՞ց է, թե՞ մասրուտցի:

Միսակը ըմպանակն առանց խմելու սեղանին դրեց .

— Մաթսու Մելոյի Նունուֆարը մի՞տդ է...

— Ինհա՛րկե,— բացականչեցի ես,— Արտամետի ամենասիրուն աղջիկն էր: Նրա՞ն ես առել: Կեցցե՛ս:

Միսակի ականջները կակաչի պես կարմրեցին:

— Շնորհակալ եմ իրենից ու իր ցեղից: Երկու աղջիկ ունեմ: Օֆիկս մեր նախագահի կինն է, Նազիկը՝ հարվածային օղակավարուհի, և մի ամիս առաջ պսակեցինք մի լավ տղայի հետ: Իմ ցավը մինուճար որդիս է, Մեսրոպ է անունը: Նրա ցավից եմ եկել քեզ մոտ:

Ես մտքումս վախեցա, որ Միսակի որդին մի վատ բան է արել և հայրը եկել է, որ իմ օգնությամբ նրան պատժից ազատի:

— Ի՞նչ է արել:

— Անցյալ տարի միջնակարգն ավարտեց ու հիմա աշխատում է կոլխոզում որպես հարվածային հովիվ: Սարը Մեսրոպիս անունով է երդվում: Մասրուտում շատ մեծ հարգանք ունի: Նկարն էլ տպել են շրջանային թերթում:

Միսակը ծոցի գրպանից հանեց շրջանային թերթի համարը, խնամքով բաց արեց ու դրեց իմ առաջ: Բայց իմ վախը դեռ չէր անցել.

— Բայց և այնպես, քո Մեսրոպը ի՞նչ է արել:

Միսակը մի ումպ կոնյակ խմեց, բեղերը հարդարեց ու գանգատվեց.

— Չի ուզում գնալ ինստիտուտ, որ ուսումը շարունակի:

— Չի ուզո՞ւմ:

— Բա՞: Չի ուզում: Ասում եմ՝ ա՛յ որդի, հերդ մնացել է կիսագրագետ ռանչպար, քույրերդ միջնակարգն ավարտել, գնացել դառել են ուրիշի տան ճրագ: Մեր տան ճրագն էլ դու ես: Ինչո՞ւ չես ուզում բարձրագույն ուսում ստանալ, որ մեր գերդաստանից էլ գոնե դու դառնաս մարդ: Ասում է՝ միջնակարգն ավարտեցի, հերիք է, թող ինձ համար սարում հանգիստ ոչխար պահեմ: Էստեղ էլ, ասում է, մարդը մարդ կդառնա:

— Այդպես էլ ասո՞ւմ է:

— Բա՞: Էդպես էլ ասում է ոչուփուչը:

— Ճիշտ է ասում,— ազատ շունչ քաշեցի ես:

Միսակն իր մանր ու փայլուն աչքերը երեսիս հառեց այնքան վիրավորված, որ կարծես թե ես նրան անպատվել էի ամենածանր խոսքերով.

— Ո՞վ է ճիշտ ասում: Բա էդ խո՞սք էր, որ դու ասացիր, Վահա՛ն ջան: Ես ու դու իրար հետ մեկտեղ տավար էինք արածացնում: Իրար հետ էլ գաղթեցինք Արտամետից մինչև Երևան: Դու մնացիր քաղաքում, ես գնացի գյուղ: Դու այստեղ բարձրագույնն ավարտեցիր, անունդ փոխեցիր, դառար աշխարհին հայտնի Վահան Վեմյան: Որդիներիդ էլ դարձրիր պրոֆեսորներ: Ասա, որ էդպես չի: Իսկ ես մնացի կիսագրագետ Միսակ, ասել է՝ կես մարդ: Ու դու էսօր թողնում ես, որ մինուճար որդիս էլ մնա կիսագրագետ:

Ես հասկանում էի մանկության բարեկամի ցավը և չգիտեի, թե ինչպես նրան ամոքեմ.

— Միսա՛կ... ախար դու ինքդ ասացիր, որ քո որդին ուսանել չի ուզում:

— Գլուխը քարին է տալիս,— բարկությունից հազաց և մազ մնաց խեղդվեր Միսակը:— Հենց դրա համար եմ քեզ մոտ եկել: Կանչիր ու համոզիր նրան: Նա քո խոսքը գետնով չի տա:

Ես ընկա մտատանջության մեջ: Արդյոք ճի՞շտ կլիներ համոզել երիտասարդ կոլխոզնիկին, որ նա թողնի իր սիրած գործը և իր ցանկությանը հակառակ մտնի բարձրագույն դպրոց: Առանց այն էլ մեզանում մտավորականների թիվը գնալով շատանում է, նյութական աշխատանքի մարդկանց թիվը՝ նվազում: Սա շատ է վտանգավոր: Ես իմ այս խոհերը բացատրեցի Միսակին.

— Արդյոք ճի՞շտ կլինի քո որդուն շեղել ճանապարհից: Նա հիանալի հովիվ է և իր վիճակից գոհ:

— Է՜հ,— անհույս տնքաց Միսակը,— հիսուն տարվա մեջ մի անգամ քեզանից բան խնդրեցի...

— Մի՛ նեղանա, սիրելի՛ Միսակ,— ես տեսա, որ



նրան մերժել չեմ կարող...— Վաղը ևեթ Մեսրոպին կբերես ինձ մոտ: Խմենք:

* * *

Մյուս օրը նույն ժամին Միսակը ներս մտավ իր հաղթանդամ ու քիչ կոպտավուն որդու հետ: Մեսրոպը հոր պատանության պատճենն էր: Ամաչկոտ ժպիտը նրա այտին էլ փոսիկ էր գոյացնում: Նրա տեսքից իմ հիշողության մեջ վերակենդանացավ մեր գյուղը՝ իր բոլոր անվանի գոմեշներով, շներով, աքլորներով, հեքիաթներով, հարսանիքներով, իմ ու Միսակի կռիվներով ու բարեկամությամբ:

— Մեսրո՛պ, ինչո՞ւ չես ուզում ուսումդ շարունակել,— հարցրի ես, երբ արդեն սեղան էինք նստել...

Մեսրոպի թխակարմիր այտերը շիկնեցին, և նա գլուխը ծնկներին խոնարհեց.

— Եթե դուք խորհուրդ եք տալիս... ես կշարունակեմ:

Ինստիտուտի բարեկամներս անչափ ուրախացան, որ ուսանել է ցանկանում կոլխոզից եկած և աշխատանքային այդքան փառավոր փորձ ունեցող մի երիտասարդ: Մեսրոպի անհաջող քննության վրա աչք փակեցին, և նա ընդունվեց գյուղատնտեսական ինստիտուտ:

Մի տարի հետո Միսակը նորից եկավ ինձ մոտ:

— Կենա՜ցդ, Միսա՛կ ջան: Բարո՜վ ես եկել: Ի՞նչ նորություն կա գյուղում:

— Լավության մեջ մնաս, Վահա՛ն ջան,— տխուր ժպտաց Միսակը:— Շնորհակալ եմ իշխանությունից: Օֆիկս աղջիկ բերեց, Նազիկս՝ տղա: Ամեն մեկը մի լույսի կտոր: Ցավս էլի Մեսրոպն է:

— Ի՞նչ է արել,— հարցրի ես նորից վախեցած:

— Քննությունները չի տվել, կհեռացնեն ինստիտուտից:

— Իսկ ինքը ուզո՞ւմ է մնալ:

— Ուզում է, Վահա՛ն ջան,— աղերսեց Միսակը:— Ասում է՝ հայրի՛կ, ինձ որ ինստիտուտից հեռացնեն, գլուխս մահի կտամ: Միտքը նոր է բացվել, Վահա՛ն ջան, ուսման համը նոր է առել: Մեր պաշտպանը վերևում աստված է, ներքևում՝ դու:

Ի՞նչ կարող էի անել: Այբ ասել էի, պետք էր հասնեի մինչև ևօֆե: Ինձ հաջողվեց համոզել ինստիտուտի ղեկավարներին, որ հարվածային կոլխոզնիկ Մեսրոպ Շատիկյանը մի կերպ քննությունները տար և մնար ինստիտուտում:

* * *

Մեկուկես տարի հետո, ձմեռվա կեսին, Միսակը նորից եկավ: Այս անգամ ո՛չ կոնյակ խմեց, ո՛չ էլ ձեռք տվեց հացին: Խիտ ալեխառն մազերի տակ ճակատի սպին չէր երևում:

— Միսա՞կ: Պատմի՛ր:

Նա սկսեց հողագույն ճաքճքված բռունցքներով գլուխը ծեծել.

— Տունս քանդեցի՜, Վահա՛ն ջան: Դու ինձ խելոք խրատ էիր տալիս, ես չլսեցի ու տունս քանդեցի:

— Ի՞նչ է եղել:

— Էն ոչնչափուչ Մեսրոպը էս տարի էլ կտրվեց ու բարձրագույնից հեռացրին:

— Վա՜յ քո տունը շինվի, Միսա՛կ: Ես էլ վախեցա, թե մի վատ բան է պատահել: Ի՞նչ անենք, թե հեռացրին: Ուսանել չէր ուզում և չուսանեց: Թող նորից կոլխոզում աշխատի իբրև հարվածային հովիվ: Տո՞ւնըդ ինչու է քանդվել:

— Ա՜խ,— հառաչեց Միսակն այնքան ուժեղ, որ



կարծես բոլոր աղիքները փորում կտրատվեցին...— Տունս քանդվել է հենց նրա համար, որ էդ անաստվածի որդին հիմա էլ աշխատել չի ուզում:

— Ո՞նց թե...

— Բա՜: Ասում է, երկու տարի քաղաքում ուղեղ մաշեցի, որ գամ նորից Մասրուտի ոչխա՞րը պահեմ: Մազերը երկարացրել է, շալվարը նեղացրել, միրուք է թողել ու ման է գալիս գեղամիջում:

— Ուզածն ի՞նչ է:

— Ղեկավար պաշտոն:

— Վա՜հ:

— Բա՜: Ա՜յ ընկեր, ասում եմ, ես քեզ համար որտեղի՞ց ղեկավար պաշտոն ճարեմ: Շրջանի բոլոր պաշտոնները բռնված են: Հրեն՝ նախագահի Սեռոժը, հաշվապահի ժորան, պահեստապետի Ֆրունզիկը ավարտել եկել են գյուղ ու պաշտոնի են սպասում: Ո՞վ էդ անվանի տղերքին թողած՝ քեզ պաշտոն կտա: Դու սկի չես էլ ավարտել: Արի, ասում եմ, խելքդ հավաքիր, գնա ոչխարի գոմերը, առաջվա պես անուն հանիր, ու մի օր էլ քեզ կդարձնեն ֆերմայի վարիչ: Պակա՞ս ղեկավար պաշտոն է: Չէ՜, ասում է, հայրի՛կ, ես հիմա ոչխար պահողը չեմ: Երևանում, ասում է, կա Լոլա անունով մի աղջիկ, էլ հետս ման չի գա, ասում է, որ իմանա՝ ես շարքային հովիվ եմ:

— Այդպես էլ ասո՞ւմ է:

— Ասում է, բա՜: Հիմա ես ի՞նչ հող տամ գլխիս, Վահա՛ն ջան: Ինձ մի խելք սովորեցրու:

Ես ի՞նչ ասեի: Մանկությանս ընկերը ինքն էր հասկացել իր սխալը և ինքն էր իրեն դատապարտում: Ես ինչքան կարող էի նրան մխիթարեցի, գլուխը լցրի մի քանի կիսամաշ խորհուրդներով և ճանապարհ դրի:

Երկու տարի հետո վերջապես ես ինքս այցելեցի Մասրուտ և իմացա, որ Միսակի որդին, ղեկավար պաշտոն ստանալու հույսը կտրելով, ավարտել էր վարորդական կուրսերը և այժմ աշխատում էր Երևան-Մասրուտ ավտոբուսի վրա: «Լոլան» էլ դարձել էր Լուսինե Շատիկյան և ռուսաց լեզվի դասատու Մասրուտի դպրոցում: Սեղանի վրա ես բարձրացրի գինու բաժակը.

— Կենա՜ցդ, Միսա՛կ: Տեսա՞ր, քո Մեսրոպը հասավ իր նպատակին, իր ձեռքը վերցրեց ավտոբուսի ղեկը, այսինքն ստացավ ղեկավար պաշտոն:

Միսակն ուսերը թոթվեց և ժպտաց այնքան անորոշ, որ ես չիմացա, թե նա իր որդու այդ քայլին հավանությո՞ւն է տվել, թե՞ համակերպվել է:

# Սովորենք լողալ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈՒԼՑՅԱՆ

Չեմ վախենում ես ջրից,
Սառը ջրում չեմ դողում.
Թափով ցատկում եմ վերից,
Ջգվում, առաջ եմ լողում:

Կուզե՞ք գաղտնիքն իմանալ,
Լսեք պատմեմ ես մեկ-մեկ.
Պետք չէ ջրից վախենալ,
Ետ չփախչեք դուք երբեք:



Նկ. ՀՐԱՉՅԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Ես էլ այդպես արեցի.
Չվախեցա, չփախա,
Ինչքա՜ն-ինչքա՜ն փորձեցի,
Որ սովորեմ լավ լողալ:

Քույրիկիս հետ մենք հիմա
Սառը ջրում չենք դողում,
Ջուրն ենք ճեղքում թևերով,
Ջգվում, առաջ ենք լողում:



# Շուտասելուկներ և ետասլուկներ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Ճո՛ւտ, Ծո՛ւտ, արի՛
Շո՛ւտ արի,
Շուտ-շո՛ւտ արի.
Ճո՛ւտ, արի՛։

Մի թա՛ս կախիր
Գավազանից,
Ավազ հանիր
Ավազանից։

□

Սուսաննա՛, սո՛ւս, Աննա՛, սո՛ւս։

□

Թութա՛կ, ասա՝ կա թո՛ւթ։

□

Կատա՛կ արա, Սո՛ս,
արա կատա՛կ։

□

Իրա՛, քաղա՛ք արի։

□

Պապ մի՛ ասա, ասա իմ պա՛պ։

□

Ջարա՛, ասա՝ Արազ։

□

Մենակ կատակ կանեմ։

Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ

# Ճ Ի Պ Ո Տ Ը

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ամառային արձակուրդների հենց առաջին օրը, առավոտյան, մեր տուն եկավ 5-րդ դասարանցի Սեդրակը և ինչ-որ բան խնդրեց ինձ: Բայց քանի որ ես արձակուրդի մեջ էի և քնից նոր էի արթնացել, ոչինչ չհասկացա:

— Դպրոցից ինձ հանձնարարել են հավաքել աշակերտների մոտ մնացած գրադարանի գրքերը,— կրկնեց նա իր թույլ ձայնով:

— Դպրոցի գրադարանից ես երբեք գիրք չեմ վերցրել,— ասացի ես և ուզեցի փակել բակի դուռը:

— Ես եկել եմ խնդրելու քեզ, որ օգնես... Դու գիտես, չէ՞, ինչպիսի տղաներ են լինում...— Նա ուղղեց ակնոցը և լռեց:

— Հա՜... Հիմա հասկացա: Լավ:

Նա մնաց փողոցի դռան մոտ, իսկ ես ներս վազեցի, արագ հագնվեցի, վերցրի ճիպոտս և դուրս եկա:

Սեդրակը գրպանից կանոնավոր ծալած մի թղթի կտոր հանեց, վգուշությամբ բաց արեց:

Թղթի վրա գրքերը չվերադարձրած աշակերտների հինգ անուն կար:

— Լուսիկ Գրիգորյան,— կարդաց Սեդրակը:

— Քանի՞ տղա կա,— շտապ հարցրի ես:

— Երեք:

— Եթե կեսից շատը աղջիկներ լինեին, հենց հիմա տուն կգնայի:

— Չէ՛, չէ՛, ի՞նչ ես ասում, կեսից ավելին տղաներ են:

Հետո Սեդրակը կարդաց Լուսիկ Գրիգորյանի հասցեն ու ես ճիպոտով աջ ու ձախ հարվածելով առաջ ընկա:

Մինչև մենք տեղ կհասնեինք, ես Սեդրակից վերցրի ցուցակը և ստուգեցի: Վատ ցուցակ չէր. գրեթե բոլորը հինգերորդ և վեցերորդ դասարանցիներ էին: Ցածր դասարանցիների հետ ես գլուխ դնել չէի սիրում:

Իրենց տան դռների մեջ կանգնած՝ Լուսիկը, չնայած, որ 6-րդ դասարանցի էր, բայց շատ փոքր էր երևում:

— Ի՞նչ եք ուզում,— ծիծաղը հազիվ զսպելով հարցրեց նա:

— Գրադարանի գիրքը,— ասաց Սեդրակը:

— Հա՜...—բացականչեց նա,— հիմա:—Ու վազեց գիրքը բերելու:

— Ո՞ւմ վրա էր նա ծիծաղում,— հարցրեցի Սեդրակին և ուշադիր կննեցի նրա դեմքը:

— Ի՞նչ է, դեմքս թանաքո՞տ է,— հետաքրքրվեց նա:

— Չէ՛: Իսկ ի՞մը:

— Քոնն էլ՝ չէ:

Լուսիկը բերեց գիրքը, տվեց Սեդրակին և սպասեց:

— Տե՛ս, պատռված չլինի,— ասացի ես:

— Կներես, ես գիրք պատռող չեմ,— ասաց Լուսիկն ու կարմրեց:

Սեդրակը շուռ ու մուռ էր տալիս գիրքը, թերթում:

— Էջերը հաշվի՛ր,— ասացի ես:

— Ես կսպասեմ, կարող եք հաշվել,— հեգնեց Լուսիկը և հենվեց դռանը:

— Սա ի՞նչ թանաք է:

— Գրադարանից այդպես եմ վերցրել:

— Ճի՞շտ է ասում,— հարցրի ես Սեդրակին:

Սեդրակը տմբտմբացրեց գլուխը:

— Դե որ այդպես է, գնանք,— բարկացա ես:— Իսկ գիրքը պետք է ժամանակին հանձնել,— նույն բարկացած ձայնով ասացի ես Լուսիկին:

Լուսիկը պատասխանելու փոխարեն հանկարծ փռթկացրեց և փակեց դուռը:

— Ափսոս, որ աղջիկ էր:

Սեդրակը համաձայնեց ինձ հետ, ուղղեց ակնոցը և կարդաց ցուցակի հաջորդ անունը.

— Շողիկ Ավագյան:

— Չէ՛, չէ՛, դրան թո՛ղ,— բարկացա ես,— տղայի՛ անուն կարդա: Դա հետո՝ վերջում:

— Արևշատ Սահակյան: Գետափ № 27:

Ես թափահարեցի ճիպոտս և առաջ անցա: Դա ձորի կողմերն էր ընկնում: Հետաքրքիր է, ի՞նչ տղա է Արևշատը:

— Դու նրան ճանաչո՞ւմ ես,— հարցրի ես Սեդրակին:

Նա թափահարեց ուսերը:

Մենք ձորակում այս ու այն կողմ էինք թափառում և տների համարներն էինք ստուգում, երբ ինչ-որ տեղից մեկը ձայն տվեց.

— Ո՞ւմ եք փնտրում:

— Արևշատի՜ն,— կանչեցի ես:

— Ե՛ս եմ, որ կամ,— եղավ պատասխանը:

Հետո մենք գլխի ընկանք, որ նա թթենու վրա էր:

— Գրադարանի գիրքը...— ձայնը փորձեց բարձրացնել Սեդրակը, նրա ձայնը հազիվ էր լսվում: Նա հուսահատ նայեց ինձ:

— Գրադարանի գի՜րքը,— կանչեցի ես: Բայց, որպեսզի կարողանայի շարունակել խոսակցությունը, պետք է տեսնեի, ինչ տեսակ տղա էր այդ Արևշատը:

— Տեսեք, թե փոքր եղբայրս տանն է, թող բերի տա,— անփույթ ասաց նա և ըստ երևույթին շարունակեց թութ ուտել: Ես ջղայնացա:

— Գիրքը դո՛ւ ես վերցրել, դո՛ւ էլ իջիր տուր:

— Չեմ իջնի,— անտարբեր պատասխանեց նա:

— Որ բարձրացել եմ...— ես ճիպոտը տվեցի Սեդրակին և բաց արի բակի դուռը:

Հազիվ էի երկու քայլ արել, երբ տեսա թթենուց



կապված իսկական գամփռին, որն աչքի տակով, չարացած ինձ էր նայում:

Ծառի վրա Արևշատը ինչ-որ եղանակ սկսեց սուլել:

— Համեցեք, բարձրացեք թութ ուտելու,— սուլոցն ընդհատելով ձայն տվեց Արևշատը:

Ես գետնից մի քար վերցրի և շպրտեցի շան կողմը:

Շունը ցատկեց տեղից և սկսեց հաչել:

— Շան պարանը փտա՛ծ է,— կանչեց վերևից Արևշատը,— կզգուշացե՛ք, որ կտրեց՝ հաշիվներդ մաքուր է:

Հայտնվեց Արևշատի փոքր եղբայրը:

— Գրադարանի գիրքը, թե կարող ես գտնել, դրանց տուր թող գնան,— ծառից կանչեց Արևշատը:

— Որ գտնեմ, լա՞վ է,— ասաց եղբայրը և ծույլ-ծույլ ներս գնաց:

Ես գետնից մի քանի քար վերցրի և սկսեցի շպրտել ծառի վրա նստած Արևշատի կողմը: Նա ճյուղից-ճյուղ ցատկելով մի քիչ ցած իջավ, թաքնվեց բնի հետևում ու նորից սկսեց սուլել:

Երբ ես հեռացել էի բակի դռնից և քարեր էի գցում Արևշատի կողմը, անսպասելի հայտնվեց նրա եղբայրը, գիրքը տվեց Սեդրակին և արագ ետ փախավ:

— Տե՛ս, գիրքը հո չե՞ն պատռել,— բարկացած գոռացի ես Սեդրակի վրա:

— Ոչ էլ կարդացել եմ, որ պատռեի,— եղավ Արևշատի պատասխանը:

— Գնանք, գնանք,— ասաց Սեդրակը:

Բայց ես դեռ պետք է վրեժ լուծեի: Ձեռքիս դեռ

մի քար էր մնացել: Ես բաց արի բակի դուռը, նշան բռնեցի և շպրտեցի: Հետո արագ փակեցի դուռը և Սեդրակի հետ սկսեցինք փախչել: Քիչ հեռու, երբ մենք կանգ առանք, ես լսեցի Արևշատի սուլոցը և գըլխի ընկա, որ քարը չէր կպել ջանը:

— Էլ ո՞վ է մնացել,— բարկացած գոռացի ես Սեդրակի վրա, նրա ձեռքից խլելով ճիպոտը:

— Սիմոնյան Աշոտը...

Աշոտենց տան կանգի կոճակը ես սեղմեցի մի հիսուն անգամ, բայց ոչ ոք դուռը բաց չարեց:

— Երևի տանը մարդ չկա,— կամացուկ ասաց Սեդրակը:

Ես ճիպոտով խփեցի դռանը և սկսեցի իջնել աստիճաններով: Հետո մենք եղանք Ավագյան Շողիկի մոտ:

Նրա մայրիկն ասաց, որ մի կես ժամ առաջ Շողիկը դպրոց է գնացել՝ գրադարանի գիրքը հանձնելու:

Ցուցակում մնացել էր մեկ մարդ՝ Պետրոսյան Գագիկը: Լա՜վ: Կտեսնենք: Սեդրակն, իհարկե, գոհ էր: Երեք գրքեր կապկպել էր իրար, պարանի ծայրն օղակ էր արել, անցկացրել մատին և անհոգ ճոճելով գրքերը, գալիս էր իմ հետևից:

* * *

Իրենց տան մոտի նրբանցքում, Գագիկը՝ ձեռքերը կողերին, կարգապահ աշակերտի պես, անշարժ սպասում էր մեր ստուգումների արդյունքին:

— Ոնց որ բոլոր էջերն էլ մաքուր են,— հայտարարում է Սեդրակը:

— Իսկ ինչո՞ւ ես գիրքը ուշացրել,— հարց եմ տալիս ես:

— Հիվանդ էի,— լինում է պատասխանը:

— Հը՜... Իսկ գիրքը կարդացե՞լ ես: Թե՞ հենց այնպես պահել, պահել, հիմա էլ վերադարձնում ես:

— Կարդացել եմ:

— Հը՜մ... Սեդրա՛կ, հարցե՛ր տուր, տեսնենք ո՞նց է կարդացել:

Սեդրակը ուղղում է ակնոցը: Գագիկը մաքրում է կոկորդը:

Ես նկատում եմ, որ նրանք ինչ-որ բանում շատ նման են իրար:

— Իսկապե՞ս հարցնեմ,— հազիվ լսելի ձայնով ասում է Սեդրակը:

— Այո՛, այո՛, իհարկե:

— Անահիտի պահանջով, ի՞նչ արհեստ է սովորում Վաչագանը,— դեմքին լուրջ արտահայտություն տալով, սկսում է Սեդրակը:

— Նա սովորում է գորգագործություն:

— Դժվար հարց տուր,— թափահարելով ճիպոտը, պահանջում եմ ես:

Սեդրակը արագ բարձրացնում է գլուխը և հարցնում է չափազանց լուրջ, ճիշտ ու ճիշտ մեր հայոց լեզվի ուսուցչի նման:

— Ո՞րն է «Անահիտ» հեքիաթի գաղափարը:

Գագիկը թուքը կուլ է տալիս, քորում է գլուխը, մտածում, հետո շատ արագ պատասխանում է.

— Այն, որ թագավորները պետք է գորգ գործել իմանան:

Ես նայում եմ Սեդրակի կողմը և նրա դեմքի հուսահատ արտահայտությունից գլխի եմ ընկնում, որ պատասխանը ճիշտ չէ:

— Հապա լա՛վ մտածիր,— խորհուրդ է տալիս Սեդրակը, մեծի նման:

Գագիկը լուռ կծում է շրթունքները: Սեդրակը փորձում է օգնել նրան:

— Որ ամեն մարդ պետք է իմանա...

— Մի՛ հուշիր,— սպառնում եմ ես ճիպոտով, հետո Սեդրակի ձեռքից վերցնում եմ գիրքը,— այս ի՞նչ է, ինչո՞ւ է այս էջի ծայրը պատռված,— բարկանում եմ ես:

— Այդպես եմ վերցրել...— արդարանում է Գագիկը:

— Չի կարող պատահել. քեզանից առաջ այս գիրքը ինձ մոտ էր,— անմիջապես հորինում եմ ես,— և այս էջը պատռված չէր... Ասա, ինչո՞ւ ես պատռել: Չես կարդացել, բավական չէ, դեռ գիրքն էլ պատռել ես,— Գագիկը շփոթվում, երկարում էր վիզը, որ նայի... և այդտեղ էր, որ ես ճիպոտով խփում եմ նրան: Մեջքին, իհարկե, և ուժեղ էլ չեմ խփում, պնդիվ խոսք...

Սեդրակը իջեցրել էր գլուխը:

Գագիկը ոչինչ չասաց: Նա մի տեսակ անշարժացավ, տխուր աչքերով նայեց Սեդրակին, նրանք ոնց որ շատ մոտիկ ընկերներ լինեին: Հետո սեղմեց շըրթունքները ու նրա աչքերը լցվեցին արցունքով:

— Ինչո՞ւ,— հազիվ լսելի ձայնով դարձավ նա ինձ ու շրջվեց գնաց:

Սեդրակը և ես անշարժ սպասեցինք մինչև այն ժամանակ, երբ արդեն չէին լսվում նրա քայլերը:

Հետո մենք անխոս և ամոթահար վերադառնում էինք գետափով և, երբ անցնում էինք կամրջի վրայով, ես կայրացած գետը գցեցի իմ ճ ի պ ո տ ը:

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# Գ Ն Ա Ց Ք Ն Է Ս Լ Ա Ն Ո Ւ Մ

ՎԻՆՈԴԿՈՒՄԱՐ ՍՈՒՏԱ

Հեռվում գնացքն է սլանում,
Սլանում է ու երգում,
Թե ՛մրջյուն կա ճանապարհին,
Նա իր ճամփան է թեքում։

Հեռվում գնացքն է սլանում,
Մեքենավարն է ղեկին,
Հեռվում գնացքն է սլանում,
Չի տրորում ոչ մեկին։

Նրան պետք չեն ջուր ու ածուխ,
Ոչ երկաթգիծ, ոչ սլաք,
Նրան պետք է մի քիչ շաքար
Ու մի քիչ էլ արև տաք։

Հեռվում գնացքն է սլանում
Անճամփա ու անեզերք.
Մերկ անիվներ ունի սիրուն,
Ա՜խ, ներեցեք...
Ոտքեր մերկ։

Ռուս. թարգմ. Ռ. ԴԱՎՈՅԱՆԸ

# ՇԱՌԱՉՈՂ ԳԱԶԸ

ԽԱՉԻԿ ՀՐԱՉՅԱՆ

Նորից քիմիան, նորից ընկեր Քամալյանը։ Թարս է, էլի։ Երկու ամիս էլ չի անցել չարաբաստիկ պանրի պատմությունից, և ահա, խնդրեմ... Եթե բոլորս ներկա չլինեինք, կարելի էր կարծել, թե դրա մեջ դիտավորություն կար։ Մինչդեռ այդ խոսքը ակամա դուրս թըռավ Պետրոսի բերանից։

— Նախորդ դասից մենք իմացանք, տղանե՛ր, որ ջրածինը այրվող գազ է։ Այժմ եկեք պարզենք, թե ինչպես է ընթանում նրա այրման ռեակցիան մաքուր թթվածնի հետ...

Մենք հավաքվել էինք քիմիայի կաբինետում։ Տաք էր, շոգ, իսկ դրսում ձյուն էր գալիս, առաջին ձյունը։ Պարզ է, չէինք կենտրոնանում. մտքով դրսում էինք՝ ձյան տակ...

—...Այժմ շշի մեջ մղում ենք նախ մեկ ծավալ թըթվածին... ապա երկու ծավալ ջրածին։ Եղա՞վ։ Երկու ծավալ ջրածնի և մեկ ծավալ թթվածնի խառնուրդը կոչվում է շառաչող գազ։ Ուրեմն, այժմ ինչո՞վ է լցված այս շիշը, Պետրո՛ս։

Պետրոսը ոտքի կանգնեց ուշացումով և սկսեց աչքերը ճպճպացնել։ Հարցը նրա համար բոլորովին անակնկալ էր։

— Ո՞վ կարող է Պետրոսին օգնել։ Ռուզա՛ն։

— Շիշը լցված է երկու ծավալ ջրածնով և մեկ ծավալ թթվածնով, որ կոչվում է շառաչող գազ։

— Նստի՛ր, Ռուզա՛ն։ Պետրո՛ս, կրկնի՛ր։

— Շիշը լցված է շառաչող գազով, որ կոչվում է... երկու ծավալ ջրածին, մի ծավալ թթվածին։

Անկյուններից փխփխկոցներ լսվեցին։

— Ճիշտ չի՛,— այս անգամ Պետրոսը դարձավ մեզ։

Ընդհանուր քրքիջ։ Անհնար է նայել նրա մեծ-մեծ ջրագույն, անիմաստ աչքերին ու չծիծաղել։ Ընկեր Քամալյանն աշխատում է ժպիտը թաքցնել պեհնսեի տակ։

— Պետրո՛ս, պետք է ավելի ուշադիր լինել։ Ուրեմն, երկու ծավալ ջրածնի և մեկ ծավալ թթվածնի խառնուրդը կոչվում է շառաչող գազ։ Իսկ այժմ մեր շշի մեջ...

— Երկու ծավալ ջրածին կա, մի ծավալ թթվածին։

— Նստի՛ր։ Անվտանգության համար շիշը փաթաթում ենք սրբիչով, խցանը հանում և շշի բերանը մոտեցնում ենք սպիրտայրոցի բոցին... Չվախենաք, այժմ ուժեղ պայթյունը կհանգցնի բոցը։

Աղջիկներն իսկույն ականջները փակեցին, պատի ժամացույցի թիկ-թակը ներխուժեց սենյակ, ճռճռանակն սկսեց տագնապով վայրկյանները հաշվել՝ մեկ... երկու... երեք... չորս... Հայացքներս գամված է սպիրտայրոցի կապույտ բոցին։ Հիմա նա կմարի շառաչող գազի ուժգին պայթյունից։ Ճռճռանակը շարունակում է հաշվել՝ մեկ... երկու... երեք... չորս... Լարվածությունից աչքներս ջրակալում են, ծանր ենք շնչում։ Հիմա կպայթի...

Բայց պայթյուն չկա... Ինչ-որ բան չի ստացվել։ Դասարանը լուռ է։ Ընկեր Քամալյանը շփոթված նայում է փորձասեղանի անոթներին ու սրվակներին։ Ու հանկարծ...

— Ընկե՛ր Քամալյան, բա ինչո՞ւ չտրաքեց...

Դա հնչում է շառաչող գազի պայթյունի պես։ Պետրոսն է։ Բոլորս դարձանք դեպի նա։ Ընկեր Քամալյանը նույնպես։ Նայեց Պետրոսին ու ոչինչ չասաց։ Հետո շուռ եկավ և արագ քայլերով դուրս գընաց։

Լռություն, ինչպես ամպրոպից հետո։ Եվ այդ լըռության մեջ պայթեց Ռուզանի հուսահատ ճիչը.

— Կոշմա՜ր, կոշմա՜ր, կոշմա՛ր...

Դերենիկը տեղից պոկվեց, բայց մենք պահեցինք նրան։ Նա կարող էր մի անուղղելի բան անել։

— Լսի՛ր դու։ Հասկացա՞ր ինչ արիր... Հասկացա՞ր,— փնչաց նա։

Պետրոսը շփոթված, շշմած կանգնել էր տեղում և

իր ամբողջ կերպարանքով հարցնում էր. «Ի՞նչ արի որ...» Դերենիկի բարկությունը մեկեն նստեց:

— Պահեստդ լցրել ես ամեն տեսակ ավելորդ կտրիչ-ժանիքներով, իսկ ամենակարևոր բանը՝ իմաստության ատամը բացակայում է:

Ամպրոպն անցավ, տղաները հանգիստ շունչ քաշեցին:

— Մեր մեջ ասած, Դերենի՛կ,— միջամտեց Մելիքսեթը,— դու էլ իմաստության ատամ չունես... Դրանք չորս հատ են լինում և աճում են ավելի ուշ, քսան-քսանհինգ տարեկան հասակում: Ուրիշ բան, որ վախենամ այդ տարիքում էլ Պետրոսի իմաստության ատամները դուրս չգան:

Պետրոսը ժպտաց, ցուցադրելով բոլոր իր սեղանատամ-կտրիչ-ժանիքները:

— Իսկ հիմա կգնաս ընկեր Քամալյանի մոտ, ներողություն կխնդրես,— կարգադրեց Դերենիկը:

— Ի՞նչ ասեմ:

— Կասես՝ ներողություն եմ խնդրում, ես չէի ուզում վշտացնել ձեզ, այդ խոսքը հենց այնպես դուրս թռավ բերանիցս:

— Հո սուտ չի՞...

— Շտապի՛ր, քանի զանգը չեն տվել:

— Երկար է, միտս չի մնա:

— Դու էլ կարճ կապիր: Ներողություն, էլ չեմ անի, սաս: Կարո՞ղ ես:

— Կարող եմ:

— Դե գնա՛:

— Վախենամ բարկանա:

— Չի բարկանա:

— Որ ասում եք... Ախր ինչ ասի, որ...

— Այդ հարցը դեռ կքննենք, իսկ առայժմ շտապի՛ր:

— Ասում եք, գնամ, էլի:

— Շտապի՛ր:

— Լավ, գնացի... Մի բան էլ ասած լինեի՝ ցավ չէր...

— Երկարացնում ես:

— Չէ՛, չէ՛, տրաքե՞ց:

— Կարճ կապիր:

— Չտրաքեց, չէ՞... Մարդու տրաքելն է գալիս: Լավ-լավ,— նկատելով Կոմիսարի բարկությունը, եզրափակեց Պետրոսը և, շարունակելով քթի տակ փնթփնթալ, դուրս գնաց սենյակից:

Պետրոսը, իհարկե, ներողություն խնդրեց, ընկեր Քամալյանը ներեց նրան, և յոթերորդ «ա» դասարանը շարունակեց իր առօրյան: Կոմիսարն ու Անգինը նորից խռովեցին իրարից, բայց միայն երկու օրով, Մելիքսեթը որոշեց գիտնական դառնալ, Գևորգն ուզում է նվիրվել բեմին, չնայած դրա համար միայն ականջներ շարժելը երևի քիչ է: Պետրոսը առաջին անգամ ատոնաց կակազելու արտասանեց Կուրղինյանի «Բանվորները», իսկ դա մի բան նշանակում է, գրողը տանի:

Երկուշաբթի Պետրոսը դպրոց եկավ արտակարգ տրամադրությամբ: Կարծում էինք նախորդ շաբաթվա արտասանության ազդեցության տակ է դեռևս, բայց սխալվեցինք:

— Ի՞նչ է պատահել,— հարցրեց Դերենիկը:

Պետրոսը աչք-ունքով հասկացրեց, որ միջանցք դուրս գանք: Պետրոսն զգուշություն բանեցնի՞: Անհավատալի է: Ուրեմն, արտակարգ մի բան կա:

Դուրս ելանք միջանցք:

Պետրոսը մի երկու անգամ էլ աջ ու ձախ աչք ածեց և էլի չդիմացավ:

— Դուք գիտե՞ք, որ ընկեր Քամալյանը գրող է... Ազնիվ խոսք:

Տպավորությունը ցնցող էր: Դա անհավատալի էր, բայց որ Պետրոսն էր ասում...

— Ահը՛ գիրքը, թե որ չեք հավատում:— Եվ նա պայուսակից հանեց կանաչ շապիկով մի գրքույկ ու պարզեց Կոմիսարին: Բոլորս վրա պրծանք:

Շապիկի վրա խոշոր տառերով տպված էր. «Արուսի երազը», իսկ վերևում, ավելի փոքր տառերով՝ Գ. Քամալյան:

— Վա՜յ,— շշնջաց Գևորգը:— Ճիշտ է, էլի...

— Բա սուտ եմ ասո՞ւմ...

Գիրքը ձեռքից-ձեռք անցավ: Շոշափում էինք, շոյում շապիկը, իսկ Մելիքսեթը նույնիսկ հոտ քաշեց.

— Ներկի, սոսնձի ու էլի ինչ-որ բանի հոտ է գալիս:

— Ո՞րտեղից առար,— հարցրեց Կոմիսարը:

— Անկյունի գրախանութից: Մտա տետրակ վերցնեմ, մեկ էլ տեսնեմ՝ ընկեր Քամալյանը... Ուզում էի դուրս ծլկեմ, որ ինձ չտեսնի: Մոտեցավ գրավաճառուհուն ու ասում է. «Մի քսան օրինակ իմ գրքույկից տաք»: Հենց որ գրախանութից դուրս գնաց, մոտեցա կնոջը: «էն գրքից մի հատ էլ ինձ տվեք»: «Ո՞ր գրքից»: «Այ, էն մարդը որ ուզեց»: «Հա՛, Գեղամ Քամալյանի գրքույկից»: «Ահը, ասում եմ, իմ ուսուցիչն է»: Ամբողջ օրը գիրքը թևիս տակ ման էի գալիս, ոչ մեկդ էլ չպա-



*տահեց, որ ասեմ: Գժվելու բան էր...*

*— Կարդացե՞լ ես:*

*— Կարդալու ժամանակ կա՞ր... Երեկվանից ժամեր եմ հաշվում, թե երբ կլուսանա, որ ձեզ տեսնեմ...*

*— Հասկանալի է,— եզրափակեց Կոմիսարը, ապա դարձավ Մելիքսեթին.— Վազում ես գրախանութ, քսաներեք օրինակ գիրք առնում ու ետ ես գալիս: Ահա քեզ մի ռուբլի: Շուտ, մինչև զանգն այստեղ լինես:*

*— Բարև՛, տղանե՛ր:*

*— Բարև՛ ձեզ, ընկե՛ր Քամալյան:*

*Նա առաջանում է դեպի դասարանի կենտրոնը, մատյանը դնում ուսուցչական սեղանին:*

*— Նստեցե՛ք:*

*Ընկեր Քամալյանը սովոր շարժումով ետ է հրում աթոռը, նստում ու պատրաստվում է դասի: Հայացքը մատյանից կտրում է, իսկ մենք դեռ շարունակում ենք կանգնած մնալ:*

*— Նստեցե՛ք:*

*Աչքի պոչով հետևում ենք Կոմիսարին՝ ինչ կասի: Կոմիսարը զգաստ կանգնած է, ձեռքերը սեղմած կողքերին: Մենք էլ ենք ձգվում:*

*Ընկեր Քամալյանը վեր է կենում տեղից: Այստեղ ինչ-որ բան կա, բայց ի՞նչ... Եվ հենց այդ րոպեին աչքն ընկնում է նստարաններին շարված գրքույկներին... Նա շփոթվում է, շիկնում, աչքերը պենսնեի տակ փայլում են խոնավ, իսկ պենսնեն ուրախ կայծկլտում է.. .*

*Մենք էլ ենք ուրախ, հուզված, և ժպիտով լուսավորված մեր դեմքերն ուղղված են ուսուցչին՝ ընկեր Քամալյանին: Եվ, որքան էլ դա տարօրինակ է, ընդհանուր տրամադրությունն արտահայտում է Պետրոսը՝ մեր սիրելի ու անզուսպ ընկերը.*

*— Ընկե՛ր Քամալյան, ի՞նչ տեսակ մարդ եք... Տխուր եք՝ լաց եք լինում, ուրախ եք՝ էլի լաց եք լինում... Ախր մենք ձեզ, ոնց են ասում... սիրում ենք... Ազնիվ խոսք...*





## ԻՆՉՊԵՍ ՊԱՏՐԱՍՏԵԼ ՀԵՐԲԱՐԻՈՒՄՆԵՐ

Բնության մեջ շատ կան ոչ միայն գեղեցիկ, այլև օգտակար և կարևոր նշանակություն ունեցող բույսեր: Կան նաև դեղամիջոց հանդիսացող բույսեր, բույսեր, որոնք խիստ անհրաժեշտ են բժիշկներին, քիմիկոսներին, հրուշակագործներին, կաշեգործներին և պարտիզպաններին: Շատ են նաև բույսեր-հանքաուղեցույցները, կողմնացույցները, ժամացույցները և բարոմետրերը:

Այդ բոլոր բույսերի մասին դու կարող ես հետաքրքիր շատ բան իմանալ: Բայց, իհարկե, ոչ միանգամից: Դրա համար պետք է բավական երկար ժամանակ: Երևի դու հաճախ ես մտածում, մանավանդ ամռանը, հավաքել հերբարիում-բույսերի հավաքածու կազմել: Ինչքան հետաքրքիր ու լավ կլինի, երբ ձմռանը ընկերներիդ ցույց տաս ամռանը պատրաստած քո հերբարիումը, պատմես նրանց կարմանալի շատ բույսերի մասին: Ի միջի այլոց հերբարիում պատրաստելը շատ հետաքրքիր և հրապուրիչ զբաղմունք է:

Նա, ով որոշել է կազմել բույսերի հավաքածու պետք է հիշի՝

Հերբարիումը չեն հավաքում մեկ օրում և նույնիսկ մեկ ամսում:

Բույսերը պետք է հավաքել տարբեր տեղերից:

Ուշադիր կննիր անտառի հովիտը: Այնտեղ շատ կան տարբեր տեսակի ծաղիկներ և խոտ: Միաժամանակ հետո եթե նորից գնաս այդ նույն բացատը, կըտեսնես, որ քո տեսած ծաղիկներից շատերը այլևս չկան: Եվ հայտնվել են նորերը: Խոտը նույնպես փոխված կլինի: Մի ուրիշ բան էլ. անտառի բացատում դու կգտնես մի բույս, իսկ մարգագետնում՝ մեկ ուրիշ: Կգնաս գետափ և բոլորովին ուրիշ բույս կտեսնես:

նշանակում է, կարևոր է երկու բան՝ ժամանակը և տեղը: Նրանք, ովքեր հերբարիում են հավաքում, պետք է իմանան մի քանի կանոններ: Օրինակ, անհրաժեշտ է ստույգ և ճիշտ գրի առնել որտեղ և երբ է գտել բույսը: Բույսը պետք է շատ զգույշ և առանց վնասելու պոկել, բերել տուն, դպրոց, ճամբար: Հետո անմիջապես, մինչև թոշնելը, բույսը պետք է պահել երկու հաստ թղթերի արանքում և վրան որևէ ծանրություն դնել: Որոշ ժամանակ անց, բույսը չորանում է՝ պահպանելով իր բնական ձևը, իսկ մի քանիսն էլ նույնիսկ՝ գույնը: Չորացած բույսը ավելի փխրուն է լինում և պետք է շատ զգույշ վարվել նրա հետ: Մնում է միայն մոնտաժել հերբարիումը՝ բույսերը պետք է ամրացնել հաստ և ամուր թղթի վրա և տակը մակագրել:

Այժմ արդեն պատրաստ է հերբարիումը:

Իսկ ո՞րն է ավելի լավ՝ հավաքել ծաղիկնե՞ր, թե՝ ծառերի տերևներ: Դա կախված է նրանից, թե ինչ նպատակ ես դու հետապնդում:

Աննպատակ հերբարիում հավաքելը ոչ մի նշանակություն չունի: Որպեսզի քո հավաքածուն ինչ-որ արժեք ունենա, պետք է անպայման որևէ նպատակ հետապնդի, որևէ թեմա շոշափի: Օրինակ, կարելի է հավաքել միայն դեղամիջոց հանդիսացող բույսեր կամ էլ ծառերի տերևներ: Կարելի է հավաքել նաև որևէ ստույգ տեղանքի բույսեր՝ անտառայինի, մարգագետնային բույսեր և այլն:

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*

# ՀԵՔԻԱԹՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԻ ԱՐՔԱՅԱԶՆԸ

(Զրույց Հանս Քրիստիան Անդերսենի մասին)

*ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*

**Մառախուղի միջով, ինչպես լապտերայուն, քայլում էր բարձրահասակ մի մարդ: Նա տեսքով նման էր բախտագուշակի և այդ նրան այնքան տհաճություն չէր պատճառում, որքան թագավորի համար իր ստեղծագործությունների ընթերցումը:**

**Ահա նա դեմ առավ ցեխի մեջ խրված ձիասայլին: Երկու երեխաներ՝ աղջիկ և տղա, ջանում էին սայլը հանել լպրծուն փոսորակից: Մարդը ձիու հետ լծվեց սայլին և դուրս քաշեց այն: Երբ սայլը նորից ճռնչաց պալատ տանող ճանապարհով, երեխաներն ու երկարահասակը ծիծաղեցին:**

**— Երևի երբեք այսպես չէիք ցեխոտվել,— ներողություն խնդրող տոնով ասաց տղան:**

**— Չենք մոռանա ձեր մեծահոգությունը,— ավելացրեց աղջիկը:**

**— Արժանի եք,— ժպտաց մարդը:**

**Հորինելու կիրքը նորից համակեց նրան:**

**— Չէ՞ որ դուք իսկական թագավորի կավակներ եք՝ արքայական և արքայադուստր: Չար կախարդ առնետը հափշտակել է ձեզ, դարձրել աղքատ երեխաներ ...Բայց մի օր կախարդանքը կվերանա և ժողովուրդը ձեզ գահ կբարձրացնի, որ երկիրը կառավարեք արդարությամբ...**

**Սառը քամի փչեց: Մարդն ու երեխաները սողացին սայլի ծածկի տակ: Թաց կարտոֆիլի վրա պառկած, նրանք մտքով տեղափոխվեցին այն հեքիաթային աշխարհը, որտեղ բոլորն ապրում են բարության ու աշխատանքի մեջ:**

**...Կարտոֆիլ բերող սայլը կանգ առավ թագավորական պալատի ետնամուտքի մոտ: Երկու ուժեղ տղամարդ բեռնաթափեցին այն, իսկ թրջված, մրսած երեխաներին տարօրինակ պարոնի հետ տարան խոհանոց՝ կրակի մոտ տաքանալու:**

**Մինչ երեք բարեկամները աշխույժ զրուցում էին՝ վայելելով կրակի ջերմությունը, մորաքույր Իդան նրանց հյուրասիրեց թարմ փքաբլիթներով, որոնք պատրաստվել էին թագավորի հյուրերի համար:**

**— Ձեզ մոտ մի՞շտ է այսպես տոնական լինում,— հարցրեց պարոնը:**

**— Միշտ,— պատասխանեց մորաքույր Իդան,— բայց այսօր արտակարգ է, որովհետև թագավորի հյուրերն են երկրի մեծանուն արվեստագետները, իսկ այդ բամբասողները սիրում են համեղ բաներ խժռել...**

**Երկարահասակ պարոնը ծիծաղեց:**

**— Եթե կամենաք, ես ձեզ ցույց կտամ նրանց,— մինչև իր նոր բարեկամի ականջը ձգվելով, փսփսաց Օլիվեն:**

**— Ինչպե՞ս...**

**— Ձեղնահարկից,— ասաց տղան,— այնտեղ ես**



ու Էլիտան մի բոնցքաչափ անցք ենք գտել, որտեղից երևում է ամբողջ դահլիճը, իսկ խոսակցությունը լսվում է ինչպես թատրոնում:

— Հրաշալի է...— Եվ պարոնի աչքերը մանկական չարաճճիությամբ լցվեցին:

Երբ նրանք խարխափելով խավարում, հայտնվեցին դահլիճ նայող անցքի մոտ, Օլիվեն ասաց.

— Այսօր, նայելու իմ հերթը ձեզ եմ նվիրում:

— Ես էլ,— ավելացրեց Էլիտան:

— Մենք կարող ենք ազատ խոսել, որովհետև դահլիճում մեզ չեն լսի, իսկ այս փոշոտված թագավորները, որոնց վաղուց թափել են այստեղ, լուռ են ինչպես համրեր:— Օլիվեն այս ասելով՝ ոտքով հրեց բրոնզե այն արձանիկը, որը պատկերում էր թագավորի պապին շագանակ ուտելիս: Երկարահասակը թեքվեց դեպի գաղտնի անցքն ու այնտեղ՝ ներքևում տեսավ պճնված փուչիկ-մարդուկների, որոնց կարծես առաջին անգամ էր տեսնում: Նրանք այժմ երևում էին այլ կերպ, քան առաջ, երևում էին ինչպես մանրադիտակի փողից և ավելի հեշտ էր այստեղից գուշակել նրանց ճշմարիտ էությունը:

— Ա՜յ, թե ո՞ւր էի հրավիրված ես և ում մոտ պետք է կարդայի իմ հեքիաթները...— ինքնիրեն շշընջաց երկարահասակը: Իսկ այնտեղ՝ ներքևում, կրթության և արվեստի մինիստրը շարունակում էր թագավորին ներկայացնել վաղուց ժամանած արվեստագետներին: Նրանք երաժիշտներ էին, նկարիչներ, քանդակագործներ և գրողներ:

— Սակայն կա մեկը, որին ես այստեղ չեմ տեսնում...— ակնարկեց թագավորը:

— Հանս Քրիստիան Անդերսենը, տե՛ր իմ...— շտապեց մինիստրը:— Ինչ վերադարձել է արտասահման կատարած մեկամյա ճանապարհորդական ուղևորությունից, իրեն տարօրինակ է պահում...— Մինիստրի կոկորդում ինչ-որ բան դեմ առավ և ճիգով կուլ տալուց հետո, շարունակեց.— Այդ կոշկակարի որդին ծնվել է Ֆյուն կղզու Օդենս քաղաքում՝ 1805 թվականին: Սովորել է չքավորների դպրոցում: Հոր մահից հետո աշխատել է մահուդի և ծխախոտի ֆաբրիկաներում: ...Միայն 14 տարեկան հասակում նրան հրաշքով հաջողվում է հայտնվել Կոպենհագենում և ձերդ ողորմության թոշակով սովորում է նախ՝ գիմնազիայում և ապա՝ համալսարանում: Սակայն փիլիսոփայական գիտությունների թեկնածուի կոչում ստանալով...

— Ահա՛, տեսնո՞ւմ եք, ինչպե՞ս են որոշ մարդիկ հատուցում իմ ողորմածությանը,— ծոր տվեց արքան:

— Այո՛, և դուք, տե՛ր իմ, այնքա՜ն մեծահոգի գտնվեցիք, որ այդ շրջմոլիկին հնարավորություն տվեցիք 1833-ին ճանապարհորդել Գերմանիայում, Շվեյցարիայում, Ֆրանսիայում և Իտալիայում, որտեղ նա նոր բարեկամներ գտավ... Ասում են, նրա մասին չափից ավելի գովեստներ են շռայլում Հայնեն, Դիկկենսը, Լիստն ու Շումանը...

— Լսել եմ, որ նրա հեքիաթները, որոնց հերոսներն իր նման սքանչելի գեղեցկությամբ են օժտված, մուրացիկները ձեռքից-ձեռք են փոխանցում...

Թագուհու ակնարկը Անդերսենի արտաքին գեղեցկության մասին, չարախինդ ծիծաղ առաջացրեց դահլիճում:

Ձեղնահարկում տարօրինակ պարոնը թևքով սրբեց դեմքը: Նրան կրկին համակեց ամոթխածությունը ու ներքին այրող վիշտն իր արտաքին տգեղության հանդեպ, որը միշտ հետապնդում էր իրեն: Կանանց ծաղրը, որ նա ջանում էր մոռանալ իր վառ երևակայությամբ, իրեն գեղեցիկ և բարետես պատկերացնելով, նորից օձի նման դուրս սողաց թագուհու շուրթերից: Եվ նա աշխատեց շուտափույթ հեռանալ չղջիկներով, առնետներով և ամեն տեսակի կեռուններով բնակեցված այդ պալատ-որջից:



Երկարահասակ պարոնը, որ Օլիվեի և Էլիտայի աչքին հայտնվեց ինչպես մի երևակայական արքայազն, այժմ իր խոշոր քայլերով հեռանում էր Կոպենհագենի գիշերային փողոցներով... Նա իր հետ տանում էր հեքիաթների մի կախարդական աշխարհ, որի համար նեղ էին անգամ Համլետի հայրենիքի սահմանները և որը նա պետք է կերտեր կյանքի 70 տարիների ընթացքում...

...Այդ մարդն ինքը՝ Դանիայի մեծագույն գրող Հանս Քրիստիան Անդերսենն էր. «Անճոռնի բադիկը», «Աղջիկը և լուցկիները», «Անագե տոկուն զինվորիկը» և այլ հարյուրավոր սքանչելի հեքիաթների, պոեմների, դրամաների ու վեպերի ստեղծողը...

# ՈՍԿԵ ԵՂՋՅՈՒՐՆԵՐ



Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ

(Աֆրիկյան հեքիաթ)

*Մի ծերունի կավից մի մարդուկ պատրաստեց՝ հըսկայական փորով ու մեծ բերանով: Պատրաստեց ու դրեց դուրսը, որ արևի տակ չորանա: Հետո գնաց իր պառավի մոտ և սկսեց գլուխը գովել:*

*— Ապա մի նայիր, պառավ, ի՞նչ մարդուկ եմ սարքել:*

*Պառավը պատուհանից նայեց ու տեսավ, որ կավե մարդուկը կենդանացել և ատամներն է կրճտացնում: Նա շատ վախեցավ ու ասաց.*

*— Վա՜յ, ծերո՛ւկ, այդ ի՞նչ ես արել: Ախր, նա կենդանի է: Ա՛յ հիմա ներս կմտնի ու մեզ կուտի:*

*Չհասցրեց պառավն այդ ասել, պատուհանի տակ ծանր քայլեր լսվեցին՝ թը՛փ, թը՛փ, թը՛փ:*

*Կավե մարդուկը բացեց դուռը և ներս մտավ:*

*Նայեց շուրջը, տեսավ ծերուկին, որ անկյունում նստած ցանց էր հյուսում, կողքին էլ՝ պառավը:*

*Ձեռքը մեկնեց, երկուսին էլ բռնեց և կուլ տվեց ցանցի հետ, որ նրանք հյուսում էին:*

*Գլուխը շրջեց, նայեց՝ էլ ի՞նչ կարող է անուշ անել և բան չգտնելով դուրս գնաց: Դիմացից երկու աղջիկ էին գալիս: Մեկը սափորով էր ջուր բերում, մյուսը՝ դույլերով: Կավե մարդուկը բացեց իր երախը ու երկուսին էլ կուլ տվեց՝ սափորն ու դույլերն էլ հետը: Եվ շարունակեց ճանապարհը:*

*Հանդիպեց երեք ծեր կանանց, որոնք հատապտուղներով լիքը զամբյուղիկներ էին բերում: Երեքին էլ բռնեց ու զամբյուղիկների հետ կուլ տվեց:*

*Եվ շարունակեց գնալ՝ թը՛փ, թը՛փ, թը՛փ:*

*Գետի ափին տեսավ երեք ձկնորսների, որոնք նավակն էին ձյութում: Նա սրանց էլ նավակի հետ կուլ տվեց:*

*Հանդիպեց երեք փայտահատի: Սրանց էլ կացինների հետ կուլ տվեց և շարունակեց գնալ:*

*Գնա՜ց, գնա՜ց, հանկարծ տեսավ մի սար, իսկ սարի վրա ճյուղավոր եղջյուրներով երիտասարդ եղնիկ էր արածում: Կավե մարդուկը կանգ առավ և ասաց.*

*— Յա՛ծ իջիր, քեզ էլ կուլ տամ:*

*Եղնիկը պատասխանեց.*

*— Դու կանգնած մնա տեղումդ, միայն բերանդ լայն բաց արա: Ես թափ կառնեմ և ուղիղ բերանիդ մեջ կցատկեմ:*

*Կավե մարդուկը ուրախացավ, ծիծաղեց՝ հա՜-հա՜-հա՜, մոտեցավ սարին, բերանը բացեց ու սպասում էր, թե երբ եղնիկը բերանի մեջ կցատկի:*

*Իսկ եղնիկը թափ առավ և, շը՜խկ, եղջյուրներով խփեց ուղիղ նրա փորին:*

*Կավե մարդուկը ընկավ և փշուր-փշուր եղավ:*

*Բոլորը, որոնց կուլ էր տվել, ոտքի ելան և իրենց տները գնացին. ծերունին ու պառավը իրենց ցանցը տարան, ծեր կանայք՝ հատապտուղներով զամբյուղիկները, փայտահատները՝ կացինները, ձկնորսները՝ նավակը: Իսկ նրանց հետևից վազում էր եղնիկը:*

*Աղջիկները շատ ոսկի՝ բերեցին, և մարդիկ ոսկեզօծեցին եղնիկի եղջյուրները: Այդ ժամանակից ի վեր բոլորը սկսեցին քաջ եղնիկին Ոսկե եղջյուրներ անվանել:*

# Շ Ո Ւ Ն Ը

*ԲԵՆԻԿ ՍԵՅՐԱՆՅԱՆ*

Երեխաները նրան գտել էին վաղ առավոտյան, իրենց փողոցի անկյունում:

Գեղեցիկ էր, թավամազ, ասես ոսկուց ձուլված:

Օրը շաբաթ էր: Լուսադեմին շատերն էին որսի գնացել: Հավանորեն փողոցի ոլորանում շունը ցած էր թռել կամ ընկել էր բեռնատարի թափքից և տերը չէր նկատել: Աղջամուղջին նախորդող մթության մեջ շունըն ինչ-որ տեղ վազել էր մեքենայի հետևից, ապա ետ դարձել, եկել նույն տեղը, ուր բաժանվել էր տիրոջից, մայթեզրին պպված, սպասում էր նրա վերադարձին:

Լեզուն դուրս հանած, պոչը խաղացնելով, անհանգիստ աչքերը շողացնելով, դիմավորում էր փողոցի ծայրին հայտնվող ամեն բեռնատարի, ընդառաջ գնում: Բայց երբ համոզվում էր, որ տերը նրա մեջ չէ, հիասթափված ետ էր գալիս, պպկում նույն տեղում:

Եվ այդպես, ո՞րերորդ անգամ...

Հիմա նա սաստիկ հոգնած էր, նաև քաղցած: Երեխաները ուտելիք բերեցին, փորձեցին կերակրել: Ոչինչ չվերցրեց: Ուզեցին տուն տանել: Չգնաց:

Իսկ տերը չկա՛ր ու չկա՛ր...

Տխուր էր, շատ տխուր: Չգիտես նրա՞ համար, որ կորցրել էր մի լավ տիրոջ, նրա՞ համար, որ շուտով վրա էր հասնելու գիշերը և ինքն օթևան չուներ: Թե՞ նրա համար, որ տերն այդքան անհոգ ու անտարբեր էր գտնվել իր նկատմամբ:

Մթնեց: Էլեկտրասյուներին վառվեցին լապտերները: Փողոցը հետզհետե դատարկվում էր: Իսկ շունը դեռ մնում էր միևնույն տեղում:

Երեխաներից ոչ մեկը չէր ուզում տուն գնալ: Դե, ո՞նց գնային: Հավաքվել էին շան շուրջը, քնքշանքով շոյում, փաղաքշում էին նրա գեղեցիկ գլուխը, հուսադրական խոսքեր ասում, մի անսահման ջերմություն զգում իրենց սրտի խորքում:

Այդպես մնացին, մինչև եկավ դիմացի կոշկակարատիվ խանութի պահակ քեռի Աբելը՝ մուշտակը հագին, տիրի հրացանը թևատակին մի բարի ծերուկ: Նոր էր դուրս բերել արկղը, որի վրա գիշերը նստում էր, և դույլը, որի մեջ կրակ էր վառում, երբ երեխաները կտրեցին փողոցն ու չորս կողմից վրա տվեցին.

— Քեռի՛ Աբել, գիտե՞ս ինչ...

— Չէ՛, ե՛ս ասեմ...

— Աբե՛լ քեռի ջան...

Ծերունին հանգիստ բարձրացրեց ձեռքը.

— Սպասեցե՛ք: Հերթով:

Ծտերի պես ճռվողելով, իրարից խոսք խլելով, երեխաները արեցին շան պատմությունը, ապա խնդրեցին, որ քեռի Աբելը գիշերը հսկի նրան:

— Է, ինչո՞ւ չեք հետներդ տուն տանում,—հարցրեց ծերունին:

— Չի գալիս, է, չի գալիս...

— Տեղից չի շարժվում...

— Ոչինչ չի ուտում...

Ծերունին տխուր-տխուր նայեց շան կողմն ու մտածկոտ ասաց.

— Լավ, դուք գնացե՛ք, ես կհսկեմ...

Երեխաները ցրվեցին:

Թեև հուսալի ձեռքում էր շունը, բայց նրանք էլի չէին կարողանում հանգստանալ: Ամեն մեկը մի պատրվակով փողոց էր դուրս գալիս, գաղտնի ստուգում՝ «Հո չի՞ կորել, հո բան չի՞ պատահել»:

Բայց, ո՜վ զարմանք, շունն արդեն անցել էր դիմացի մայթը, քեռի Աբելի մոտ:

Ընթրում էին: Քեռի Աբելը սրբիչը փռել էր ծնկներին, բացել ուտելիքի պաշարը՝ հաց, պանիր, բաստուրմայի բարակ շերտեր, մի քանի ձիթապտուղ:

Ուտում էին, զրուցում: Այսինքն, քեռի Աբելը խոսում էր, իսկ շունն ուշադիր նայում էր նրան, ասես լսում նրա զրույցը:

Բայց, ամեն անգամ, հենց որ փողոցի ծայրին հայտնվում էր բեռնատար մեքենա, շունը, զրույցը և ուտելիքը թողած, իսկույն ընդառաջ էր վազում, անհանգիստ փնտրում տիրոջը, և համոզվելով, որ տերը չկա, նորից վերադառնում քեռի Աբելի մոտ:

*Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*



# ՄԻ ԳՈՒՆԱՎՈՐ ԹԵԼ ՏԱՆՈՒՄ Է ԱՂՍՏԱՖԱ

Ես նայում էի ալբոմները, գրքերը, ամեն գույնի բազմաթիվ ծրարները, լսում նրանց պատմածները ու այդ ամենը համեմատում գետի հետ։ Սովորական մի գետի, որը հոսում է հանդարտ, լուռ, բայց գարնանը վարարած դուրս գալիս ափերից։

Գարնանային գետի նման է Աղստաֆայի ու Դիլիջանի №3 դպրոցների բարեկամությունը։

Դպրոցի պիոներ-սենյակի պատին փակցված է երեխաների ձեռքով նկարված Սովետական Միության քարտեզը։ Դիլիջանից գույնզգույն թելեր են տարված դեպի տարբեր քաղաքներ։ Գունավոր մի թել էլ հասնում է ադրբեջանական Աղստաֆա քաղաքը։ Այն շատ հեռու չէ, իսկ եթե ջերմ սրտեր են սպասում այնտեղ, Դիլիջան-Աղստաֆա ճանապարհը դառնում է ամենակարճն ու ամենահեշտը։

Ու այդ ճանապարհով արդեն քանի տարի է գնում-գալիս են հայ և ադրբեջանցի դպրոցականները, ուսուցիչները։

Ամեն ինչ սկսվեց այսպես։ Մի օր պիոներները մոտեցան իրենց ուսմասվարին.

— Արտասահմանյան երկրների երեխաների հետ նամակագրություն ունենք, բայց չգիտենք, թե մեր հարևան քաղաքներում ինչպես են ապրում, ինչով են հետաքրքրվում դպրոցականները։

— Ճիշտ եք ասում,— ասաց ընկեր Պետրոսյանը,— բայց միայն նամակ գրելն ու նրանց գործերի մասին հարցնելը քիչ է, «կենդանի» կապ է հարկավոր։

— Այդ դեպքում դուք գնացեք իբրև պատվիրակ.— համարձակ պատասխանեցին երեխաները։

Մի քանի օր անց ընկեր Պետրոսյանը մտավ Ղազախ քաղաքի ժողովրդական կրթության բաժնի վարիչ Կուրբան Օրուջովի առանձնասենյակը։

— Ուզում ենք ամուր կապեր ստեղծել մեր դպրոցների միջև։

Իսկ հաջորդ օրը ընկեր Պետրոսյանն իր մոտ կանչեց իրեն Ղազախ «ուղարկող» երեխաներին ու պատմեց.

— Այս օրերին Ադրբեջանը նշում է Ռուսաստանի հետ միանալու 150-ամյակը։ Մեզ հրավիրել են Աղստաֆա՝ այդ տոնակատարությանը մասնակցելու։

Բարեկամության երկնաքեր շենքի առաջին քարը դրված էր։

Հետո՞։ Հետո ամեն տարի, նոյեմբերի 29-ին՝ Հայաստանի տարեդարձի օրը, ադրբեջանցի դպրոցականների և ուսուցիչների մի խումբ հյուր է գալիս Դիլիջան։

Իսկ մի անգամ դիլիջանցի երեխաներից մեկն ասաց.

—Ի՞նչ կլինի, եթե երկու դպրոցների ուժերով ստեղծենք մի թանգարան։ Որ դպրոցում էլ այն լինի, միևնույն է։ Թանգարանը կունենա երկու բաժին։ Առաջինում մենք կդնենք հին իրեր՝ գյուղերից կհավաքենք կճուճներ, արծաթե, մետաղե դրամներ, մեր պապերից, տատերից կխնդրենք իրենց սնդուկներում պահած հին՝ շորերը, իրերը մեզ տալ։ Իսկ մյուս բաժնում կլինի այն ամենը, ինչ կապված է մեր բարեկամության հետ. նկարներ, նամակներ, գրքեր, մակետներ, քանդակներ…

Առաջարկը հրապուրիչ էր։ Բոլորը գործի անցան։ Արդեն որոշ աշխատանքներ արված են, և շուտով թանգարանը սիրալիր կընդունի իր պատանի այցելուներին։

Դպրոցի պատանի նկարիչները մի օր դիմեցին իրենց ուսուցչին.

— Սովետական Ադրբեջանի 49-ամյակի առթիվ ցանկանում ենք բացել ցուցահանդես՝ «Ադրբեջանը հայ երեխաների աչքերով» թեմայով։ Կատարած աշխատանքները մենք կտանենք Աղստաֆա, կնվիրենք նրանց։

Այս բարեկամությունն այնքան մեծացավ, որ հանդիպումների համար այլևս չէր բավարարում դպրոցական դահլիճը։ Եվ այս տարի նրանք հավաքվեցին Դիլիջանի կուլտուրայի տանը։ Երեխաները երկար նախապատրաստվեցին։

— Թատերական խմբակը ադրբեջաներեն լեզվով կբեմադրի «Բարեկամություն» պիեսը,— խոստացավ ընկեր Սահակյանը։

Իսկ ընկեր Ուլիխանյանը պատրաստեց գրական-երաժշտական մոնտաժ՝ «Հին և Նոր Դիլիջանը» թեմայով։

Հանդիպումը համաքաղաքային բնույթ կրեց։ Հաջորդ օրը բոլորը նրանց մասին էին խոսում։

Մենք վերջացրեցինք մեր պատմությունը։ Բայց չվերջացավ փոքրիկ հերոսների բարեկամությունը։ Ոչինչ չի կարող խախտել այդ բարեկամությունը և ոչ ոք չի կարող կտրել այն գունավոր թելը, որ տանում է դեպի Աղստաֆա։

ԼԻԴԱ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 7 Հուլիս 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*Նկ. ՌԱՖԱՅԵԼ ԲԱԲԱՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.:

**„Пионер“** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 15, հեռախոսներ՝ 56-32-72, 2-68-16, 56-14-96։*

ՎՖ 05560: Պատվեր՝ 671: Տպաքանակ՝ 59500: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 3/VII, 1969 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մնդապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.



Վերջերս Հռոմում փակվեց աշխարհի հնագույն դեղատունը: Այդ դեղատունը գոյություն է ունեցել 1070 թվականից, այսինքն շուրջ ինը դար: Եվ ինը հարյուր տարի շարունակ հիվանդներին մատակարարել է զանազան դեղամիջոցներ:

*Փոստարկղի գյուտարարը անգլիացի գրող Անտոնի Թրոլլոփն է: Առաջին փոստարկղը դրվել է Լոնդոնում, 1867 թվականի դեկտեմբեր ամսին:*

*Աշխարհում ամենափոքր թվով բանակ ունեցող պետությունը Սան-Մարինոն է, ընդամենը 11 զինվոր: Իսկ ահա Իսլանդիայում և Լիխտենշտեյնում բանակներ ընդհանրապես գոյություն չունեն:*

Ֆրանսիական նշանավոր նկարիչ Պաբլո Պիկասսոյի մասին, հավանաբար, դուք շատ եք լսել, ձեզնից շատերին հայտնի են նաև նրա կտավները: Սակայն հանրահայտ նկարչի լրիվ անունը թերևս քչերին է հայտնի: Ահա թե ինչ է վրձնի նշանավոր վարպետի անունը. Պաբլո Դիեգո Խոսե Ֆրանցիսկո դը Պաուլա Խուան Նեպոմուքենո Քրիսփին Քրիսփիանո դը լա Սանտիսիմա Թրինիդադ Ռուիզ ի Պիկասսո: Բանն այն է, որ Պիկասսոն ծագումով իսպանացի է, իսկ իսպանացիները շատ են սիրում անունների այսպիսի առատություն:

*Ազատ ժամերին դուք սիրով զբաղվում եք խաչբառերի վանդակները լրացնելով: Բայց գիտե՞ք արդյոք, որ խաչբառերը ստեղծվել են վերջերս: Առաջին խաչբառը հրատարակվել է ամերիկյան «Նյու-Յորք ուորլդ» օրաթերթի 1913 թվականի դեկտեմբերի 21-ի համարում: Առաջին խաչբառի հեղինակը անգլիացի Արթուր Վինն է:*



Դուք, երևի լսել եք Օսկար մրցանակի մասին, որը վերջերս շնորհվեց նաև սովետական «Պատերազմ և խաղաղություն» կինոնկարին:

Օսկար մրցանակը Ամերիկայի Միացյալ Նահանգներում ընդհանրապես շնորհվում է լավագույն ֆիլմերին, դերակատարներին, ռեժիսորներին և սցենարիստներին: Բայց ո՞վ է այդ Օսկարը, որի անունով կոչվում է մրցանակը:

Հատուկ մրցանակի համար պատրաստված փոքրիկ արձանիկը առաջին անգամ տեսնելով, կինոյի ամերիկյան ակադեմիայի գրադարանավարուհի միսսիս Մարգարեթը բացականչեց. «Ի՜նչ նման է իմ հորեղբայր Օսկարին:» Եվ այդ անունով էլ կնքվեց մրցանակը:



Անգլիական Բենք օֆ Ինգլենդ դրամատունը հիմնադրել է... ծովահեն Վիլյամ Պեթերսոնը: Նա ծնվել է 1658 թվականին: 17 տարեկան հասակում դարձել է շրջիկ վաճառական: Հետո լքել է Անգլիան, և հաստատվելով Բահամյան կղզիներում, սկսել է զբաղվել առավել շահութաբեր գործով. դարձել է ծովահեն: Կողոպուտի շնորհիվ վիթխարի կարողություն դիզելով՝ Պեթերսոնը վերադառնում է Անգլիա և 1694 թվականին հիմնադրում Բենք օֆ Ինգլենդ դրամատունը՝ Անգլիական բանկը:

Սկոտլանդ-Յարդ անունը հայտնի է բոլոր նրանց, ովքեր կարդացել են Շերլոք Հոլմսի արկածների մասին: Իսկ թե որտեղի՞ց է առաջացել այդ անունը, հավանաբար, քչերը գիտեն:

Վաղեմի ժամանակներում Էդգար Խաղաղասեր թագավորը Շոտլանդիային նվիրեց Լոնդոնում գտնվող մի հողամաս, որպեսզի պաշտոնական այցով ժամանող շոտլանդական թագավորների համար պալատ կառուցեն: Բառացի թարգմանությամբ Սկոտլանդ-Յարդ նշանակում է Շոտլանդական պալատ:

Հետագայում Սկոտլանդ-Յարդ անունը մեքենաբար փոխանցվեց Լոնդոնի քրեական ոստիկանության վրա, որը 1829-ից մինչև 1890 թվականը գտնվում էր պալատին կից շինությունում: Թեմզա գետի ափին ոստիկանության կենտրոնական վարչության համար կառուցված նոր շենքը սկսեցին անվանել Նոր Սկոտլանդ-Յարդ:




Աշխարհում ամենածանր մետաղադրամը 10 դալեր արժեքով թողարկվել է 1659 թվականին Շվեդիայում: Մետաղադրամի քաշը 17,5 կիլո է:

Ամենաթանկ կետադրական սխալն արվել է Ամերիկայի Միացյալ Նահանգներում 1962 թվականի նոյեմբերին: Հաշվիչ մեքենայի ծրագրում միացման գծիկի բացթողում կատարելու հետևանքով, Քենեդի հրվանդանից դեպի Վեներա թռչող տիեզերանավը հարկադրված եղան պայթեցնել: Իսկ տիեզերանավը արժեր 18 միլիոն դոլար:

## ՈՒՂՂՈՒՄ

«Պիոների» 6-րդ համարի 15-րդ էջի մեջ առաջին սյունակի վերջին պարբերությունը կարդալ.

«Եթե նկատի ունենանք, որ երկրագնդի շառավիղը, կենտրոնից մինչև բևեռ, կազմում է 6357 կիլոմետր, ապա պարզվում է, որ «բրգային կանգունը» հավասար է շառավղի տասը միլիոներորդական մասին: 19 և 20-րդ դարերում կատարված երկրագնդի շառավղի չափումների արդյունքները փոքր-ինչ տարբերվում են տարբեր հեղինակների մոտ: Ո՞վ գիտե, չի՞ պարզվի արդյոք, որ նրանք բոլորն էլ սխալվում են և, որ եգիպտացիներն այդ մեծությունը իմացել են մեզանից ավելի լավ:

18-րդ դարի վերջին մետրական համակարգի ստեղծողները փորձեցին մետրը բնորոշել որպես Փարիզի վրայով անցնող միջօրեականով երկրագնդի շրջագծի քառասուն միլիոներորդական մասը: Երկարատև չափումների շնորհիվ պատրաստեցին մետրի նախատիպը, որը...»:

Այնուհետև, ինչպես տեքստում: Սխալը թույլ է տրված տպարանի կողմից:



# ԱՂՔԱՏ ԱՍՊԵՏԻ ԴՈՒՍՏՐԵՐԸ

(Հեքիաթ-խնդիր)

Վաղո՜ւց, շատ վաղուց Ֆրանսիայում մի աղքատ ասպետ էր ապրում: Նա երկու դուստր ուներ՝ Էլիզան և Ժաննան:

Նրանք ամենաճշմարտախոս աղջիկներն էին ամբողջ աշխարհում: Երբեք և ոչ ոքի չէին խաբում, նույնիսկ ապրիլի մեկին: Միայն տարվա մեջ մի անգամ, իրենց ծննդյան օրը, աղջիկներից յուրաքանչյուրը կարող էր շեղվել ճշմարտությունից, բայց դա էլ այն դեպքում, եթե հարցնեին, թե երբ են ծնվել:

Մի անգամ (այդ պատահեց 1442 թվականի ապրիլի 6-ին) ամրոցում իջևանած ճամփորդը Էլիզային հարցրեց, թե երբ է նրա ծննդյան օրը:

— Երեկ էր,— հետևեց պատասխանը:

Այդ նույն հարցին Ժաննան պատասխանեց.

— Վաղն է:

Հետևյալ օրը ճամփորդը դարձյալ հարցրեց Էլիզային և Ժաննային նույն բանի մասին:

— Երեկ էր,— դարձյալ պատասխանեց Էլիզան:

— Վաղն է,— ասաց Ժաննան:

Ճամփորդին այդ պատասխանները տարակուսանքներ պատճառեցին: Բայց դուք մի՛ զարմացեք: Մի լավ մտածեք, (կարող եք թուղթ և մատիտ էլ վերցնել) և ասացեք, թե երբ են Էլիզայի ու Ժաննայի ծննդյան օրերը:

